[ԱԶ]ԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԾ.

# ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԴՐԱՄՆԵՐԸ

ԳՐԵՑ
ԶԱՐԵՀ ՊՏՈՒԿԵԱՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1969

# ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԴՐԱՄՆԵՐԸ

ԳՐԵՑ
**ԶԱՐԷՀ ՊՏՈՒԿԵԱՆ**

**ՎԻԵՆՆԱ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1969

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ







# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Արտաշէսեան Հարստութեան դրամներու ամբողջական ուսումնասիրութիւնը դեռ ժամանակի կը կարօտի եւ պէտք է սպասել մինչեւ որ նորանոր դրամներ մէջտեղ ելլեն եւ գոցեն այն պարապ միջոցները, որ ներկայիս գոյութիւն ունին Արտաշէսեան դրամներու շարքին մէջ:

Սակայն ընդառաջ երթալով Հանդէս Ամսօրեայի խմբագրութեան դրդումին եւ քաջալերանքին, հայ ընթերցողին կը ներկայացնեմ այս փոքր հատորը, որուն մէջ նկարագրուած են ծանօթ Արտաշէսեան դրամներ՝ նոր դասաւորութեամբ մը:

Այս գրքոյկին առաջին, երկրորդ, չորրորդ եւ վեցերորդ գլուխները թարգմանութիւններն են հեղինակին գրած անգլիերէն յօդուածներուն, որ լոյս տեսած են դրամագիտական պարբերաթերթերու մէջ: Երկրորդ գլուխին պարունակութիւնը ճոխացած է կարգ մը նոր դրամներու յաւելումով: Երրորդ եւ վերջին գլուխները պատրաստուած են այս հրատարակութեան համար:

Յուսալի է որ շատ չանցած կարելի պիտի ըլլայ պատրաստել շատ աւելի ընդարձակ աշխատութիւն մը, որուն մէջ պիտի նկարագրուին ոչ միայն ամէն ծանօթ Արտաշէսեան դրամները, այլ նաեւ պիտի ներկայացուի շատ աւելի ամբողջական պատկեր մը փառապանծ Արտաշէսեաններու դրամներուն:

Եւ վերջապէս, նորէն խորին շնորհակալութիւններս Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան, որ յանձն առաւ այս դրամագիտական աշխատութեան տպագրութիւնը եւ անոր ծախքը:

## SUMMARY

The first and second chapters of this volume are translated from the author's article entitled "A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia" which appeared in Museum Notes 14 (1968) of the American Numismatic Society. In addition to a brief history of this period, it covers the coinage and submits a catalog of the coins based upon a new classification. This classification, somewhat at variance with earlier attributions, was established following the discovery of much new hitherto unpublished material. Nine new types have been added to the forty in the original article.

The third chapter is a historical survey of publications on the coinage of the Artaxiad dynasty of Armenia (189 B. C. to 6 A. D.). Since most of the earlier studies appeared in Western languages, the references will readily enable the reader to consult the original articles. It will be seen that beginning with Spanhem in 1664, Artaxiad coins have been recognized as Armenian coins, and with the gradual discovery of a number of other specimens and

types, it has been possible to construct a classification of the coinage of this period.

The gold forgeries of Tigranes the Great coins are discussed in the fourth chapter. This, again, is a translation from the author's article appearing in Museum Notes XI (1964) of the American Numismatic Society. It lists six forgeries known to the writer and, as an addendum, a seventh of a new type.

In the fifth chapter are listed important collections of Artaxiad coins. Among the museums covered are the British Museum, the Bibliothèque Nationale, the Berlin Museum, the Hermitage and the Asiatic Museum in Leningrad, the National Museum in Erevan (Soviet Armenia), the Mechitharist Museums in Vienna and Venice, and the American Numismatic Society. Mention is made of the unique coins in the Ashmolean Museum at Oxford University and the Hunterian Museum at Glasgow University. Also included are the private collections of Messrs. Donabedian in Beirut, Guevrekian and Tarzian, as well as the author's collection in New York. No attempt has been made to describe individual coins in these collections, but the number of every type has been given in each case.

The last chapter is a translation of the author's article on some copper coins of Tigranes with the reverse having a lion and

the name of Antiochus Theos of Commagene (Numismatic Chronicle, 1970). The writer believes these coins should be attributed not to Antiochus but to Tigranes who apparently acquired Commagene by peaceful means and permitted the striking of coins bearing his image on the obverse, with the name of Antiochus on the reverse.

## Ա․

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ ԴՐԱՄՆԵՐՈՒ ԴԱՍԱՒՈՐՈՒՄԸ[1]

*Արտաշէսեան Հարստութիւնը, որ գրեթէ երկու դար տեւեց — 189 Ք. ա. մինչեւ 6 Ք. ե. — եղաւ Հայաստանի համար քաղաքական ամենափայլուն շրջան մը։ Այս ժամանակամիջոցին էր որ Արտաշէսեան թագաւորներէն մին՝ Մեծն Տիգրան, հաստատեց կայսրութիւն մը, որ կը տարածուէր Կասպից եւ Սեւ ծովերէն մինչեւ Միջերկրական։*

*Քիչ բան գիտենք այս հարստութեան դրամներու մասին, եւ ինչ որ հրատարակուած է, եղած է յաճախ հակասական ու վարկածային։ Այս չփոթութեան պատճառն*

---

[1] *Հեղինակը մասնաւոր շնորհակալութիւններ կը յայտնէ* British Museum*ի,* Bibliothèque Nationale*ի, Վիեննայի Մխիթարեաններուն, Պէյրութ[ի] Պրոֆ. Ա. Տօնապետեանի եւ* American Numismatic Society*ի, որոնք թոյլատրեցին գործածել իրենց հաւաքածոներուն դրամները այս գրութեան համար։ Այս յօդուածը թարգմանութիւնն է հեղինակին Անգլիերէն ուսումնասիրութեան որ հրատարակուեցաւ* American Numismatic Society*ի* Museum Notes *14ի մէջ։*

այն է, որ Մեծն Տիգրանի դրամներէն պատ՝ ճառ քիչ թագաւորներու դրամներ գոյութիւն ունէին. իսկ քաղաքական պատճառներով ալ՝ անցեալին՝ անկարելի եղած է, պատմական Հայաստանի մէջ կատարել հնագիտական պեղումներ, ի խնդիր նոր դրամներու: Վերջերս սակայն այս կացութիւնը բարելաւուած է, եւ նոր դրամներէն պատ այս հարստութեան քննական պատմութիւնն ուսումնասիրուած ըլլալով[2], ժամանակը հասած է Արտաշէսեան թագաւորներու դրամներուն դասաւորութեան փորձ մ'ընելու:

Արտաշէսեաններու ծագումը վճռականապէս հաստատուած է հին աղբիւրներու հիման վրայ, ու վերջերս նաեւ Հայաստանի մէջ կատարուած հնագիտական աշխատանքներու արդիւնքներով: Ըստ Ստրաբոնի[3] Հայաստանի վրայ կ'իշխէին Զարեհ եւ Արտաշէս կառավարիչները, որոնք դրուած էին Անտիոքոս Մեծի (223—187) կողմէ: Երբ Անտիոքոս պարտուեցաւ Մագնեսիայի ճակատամարտին, երկու կառավարիչներն առիթէն օգտուելով ինքզինքնին անկախ հռչակեցին: Թէ Ստրաբոն եւ թէ Պոլիբոս[4] կը հաստատեն թէ Արտաշէս կ'իշխէր Հա-

[2] Հ. Մանանդեան, Քննական Տեսութիւն Հայ Ժողովրդի Պատմութեան, Չորս հատոր, Երեւան 1944—1946: R. Grousset, Histoire de l'Arménie (Paris 1947):

[3] Strabo, XI, 14, 5:

[4] Polybus, XXV, 2, 12:

յաստանի մեծ մասին վրայ: Այդ տեղեկութեանց համաձայն, այնպէս կ'երեւի թէ — Քրիստոսէ առաջ Գ. րդ դարուն — Հայաստան ընդարձակ հողամաս էր արդէն եւ հայ լեզուն կը տիրապետէր այդտեղ: Հնդեւրոպական Հայերը, որ չորս դար առաջ եկած էին արեւմուտքէն, այլեւս բոլորովին ձուլուած էին տեղական ժողովուրդներուն հետ եւ կազմած ուժեղ ու լաւ ազգ մը:

Ներկայ պատմաբանները[5] կը մերժեն Մովսէս Խորենացիի այն հաւաստումը, թէ Արտաշէսեանները պարթեւական ծագում ունէին: Մ. Խորենացիի վրայ հիմնուելով էր որ Պետրովիչ[6] կ'ենթադրէր թէ կարգ մը պարթեւական դրամներ կը պատկանէին Հայաստանի թագաւորներուն:

Արտաշէս[7], Զարեհի որդին, հիմնեց Ար-

---

[5] Մովսէս Խորենացի II (Թիֆլիս 1913), էջ 3. բայց կը շփոթէ այս թագաւորը վերջին Արտաշէսեաններու հետ. Տես C. Toumanoff, Studies in Christian Caucasian History, (Washington, D. C. 1963) էջ 111:

[6] A. Petrowicz, Die Arsaciden-Münzen (Vienna, 1904), էջ 183—199:

[7] Երկու սահմանաքարեր, որոնք գտնուեցան Սեւան լճին ափին վրայ, կը խօսին Արտաշէս թագաւորի մասին եւ կը յիշեն անոր հայրը Զարեհ: Այս վերջինս սակայն թագաւոր տիտղոսը չի կրեր: Այս քարերուն վրայ վերջին ուսումնասիրութիւնը ստորագրուած է A. Perikhanianի կողմէ «Une inscription arménienne du roi Artašés, trouvée à Zangézour (Siwnik)», Revue des Etudes arméniennes (1966), էջ 17—29. Այս յիշուած Զարեհը

*տաշատ քաղաքը՝ Արաքսի ափին վրայ: Գտնուելով Արաքսի բարեբեր հովիտին մէջ, Արտաշատ կրնար կերակրել մեծաթիւ բնակչութիւն մը: Ասոր վրայ՝ առեւտրական գլխաւոր ճամբան, որ կու գար կեդրոնական Ասիայէն եւ Չինաստանէն, կ'անցնէր այս հողամասէն՝ Սեւ ծով հասնելու համար: Այսպէս Արտաշատ երկար ատեն մնաց իբր մայրաքաղաք Արտաշէսեաններու եւ շատ հաւանական է որ թագաւորական փղերանոցը կը գտնուէր այս քաղաքին մէջ:*

*Այնպէս կ'երեւի թէ Արտաշէս թողուց քանի մը որդիներ*[8]*, որոնցմէ երկուքը՝ Արտաւազդ եւ Տիգրան՝ դահ բարձրացան: Արտաւազդ տխրուեցաւ պատերազմիլ Պարթեւստանի Միհրդատ Բ.ի դէմ*[9]*: Պարթեւները չկրցան Հայերը նուաճել. բայց մասամբ յաջողութիւն գտան, որովհետեւ թագաւորին եղբօրորդին՝ Տիգրանը՝ իբր պատանդ*[10] *Պարթեւստան տարուեցաւ:*

*Ստրաբոնի համաձայն, Պարթեւները վերստին փորձեցին նուաճել Հայաստանը,*

---

*պէտք չէ շփոթել նոյն անուն Զարեհին հետ, որ ինքզինքը Ծոփքի անկախ թագաւոր հռչակեց:*

8 *Մովսէս Խորենացի*, II, *էջ* 184. *Վրացական աղբիւրներն ալ կը յիշատակեն Արտաշէսի երկու զաւակները: Տես Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին: Երեւան* 1934, *էջ* 158—160:

9 Justus, Epit., XLII, 2, 3—6; *Մովսէս Խորենացի*, II, *գլ. Լ:*

10 Justus, XXXVIII, 3, 1; Strabo, XI, 14, 15:

*բայց պարտութեան մատնուեցան Հայաստանի թագաւոր Տիգրանի կողմէ*[11]:

*Յայտնի է որ Արտաւազդ յաջորդեց իր հօր Արտաշէսին, եւ անոր ալ յաջորդեց իր եղբայրը՝ Տիգրան Ա.ը: Ռայնախի եզրակացութիւնը, որ հիմնուած է Ապպիանոսի գրութեանց վրայ, ընդունելի է եւ կ՚ենթադրէ որ Տիգրան Բ.՝ Տիգրան Ա.ի որդին էր*[12]:

*Տիգրան Բ. Մեծն, իր ազատութիւնը գնեց Պարթեւներէն, անոնց տալով եօթանասուն հովիտներ*[13]*: Հաւանական է որ ան գահ բարձրացաւ 95ին. որովհետեւ Պլուտարքոս կը հաստատէ թէ՝ երբ Ապպիոս Կղաւդիոս Հայաստան այցելեց Ք. ա. 70ին, Տիգրան արդէն 25 տարիէ ի վեր կը թագաւորէր*[14]:

*Տիգրան յաջողեցաւ իր հողերն ընդարձակել արագօրէն: Նախ՝ ան նուաճեց դրացի Ծոփքի հայկական թագաւորութիւնը: Յետոյ, Ք. ա. 93ին յարձակեցաւ Կապպադովկիոյ վրայ, տխպելով Արիոբարզանէս Ա.ը, որ Հռոմ ապաստանի: Այս քայլը Հայաստանը բերաւ հռոմէական նուաճողական քաղաքականութեան սահմանին վրայ: Տասնեակ տարիներ տեւող պայքարները՝*

---

[11] Strabo, XVI, 1, 19:

[12] Reinach, Mithridate Eupator, (Paris, 1890), էջ 104, *կը յիշատակէ* Appian, Syr. 48:

[13] Strabo, XI, 14, 15:

[14] Plutarch, Lucullus, 21, 7:

մանրամասնօրէն նկարագրուած են Պլուտարքոսի, Ապպիանոսի եւ ուրիշներու կողմէ ու մանրակրկիտ ուսումնասիրուած ներկայ պատմաբաններէ[15]:

Կապպադովկիոյ եւ Ծոփքի նուաճումէն եւ Կոմագինէն ու դրացի երկիրները հպատակեցնելէ վերջ, Տիգրան իր ուշադրութիւնը դարձուց արեւելք: Միհրդատ Բ.ի տրուած եօթանասուն հովիտները վերագրաւելէն ետք՝ Տիգրան ստիպեց Պարթեւները, որ իրեն թողուն Միջագետքէն՝ ընդարձակ հողեր: Ասկէ զատ, Պարթեւներու թագաւորը յաղթուելով, հրաժարեցաւ «Թագաւոր Թագաւորաց» տիտղոսէն, որ անցաւ Տիգրանին[16]: Տիգրան մասնաւոր ուշադրութիւն դարձուց Միջագետքի առեւտրական ճանապարհներուն: Մծբինի իշխանութիւնը յանձնեց իր եղբօր Գուրասին[17]: Այս հողամասերու նուաճումը տեղի ունեցաւ Ք. ա. 89—85 թուականներուն:

Ասկէ վերջ, ըստ Ստրաբոնի, Սուրիա՝ եւ յետոյ Փիւնիկէն՝ կցուեցան հայկական

---

[15] Reinach, Mithridates Eupator; Հ. Մանանդեան, Տիգրան Բ. եւ Հռոմ (Երեւան 1940. Ֆրանսերէնի թարգմանուած). Tigrane II et Rome (Lisbon, 1963). CAH, Vol. IX. Գլ. 14, Հ. Աստուրեան, «Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի եւ Հռոմայ 190ին Ք. յ. մինչեւ 428 Ք. ե.»: Վենետիկ 1912: R. Grousset, Histoire de l'Arménie (Paris 1947):

[16] Justus, XI, 3:

[17] Plutarch, Lucullus, 21; Plinus, VI, 28, 142:

կայսրութեան[18]: Ք. ա. 83ին Անտիոքը գրաւուեցաւ[19] եւ քիչ յետոյ՝ արեւելեան Կիլիկիան:

Կայսրութեան կեդրոնն էր նորաշէն Տիգրանակերտը: Այնպէս կ՚երեւի թէ այս քաղաքին բնակչութիւնը, որ հարիւր հազարի կը հասնէր, բռնի բերուած էր Կապադովկիայէն[20] եւ Կիլիկիայէն[21]:

Հաւանօրէն Փիւնիկէի եւ Պաղեստինի գրաւումը տեղի ունեցաւ աւելի ուշ: Պաղոմայիդ քաղաքը առնուեցաւ Ք. ա. 70ին[22]: Այս ժամանակամիջոցին էր որ Տիգրան լսեց թէ հռովմէական բանակը Լուկուլլոսի առաջնորդութեամբ՝ Պոնտոսի Միհրդատ թագաւորը փախուստի մատնած էր ու կը մօտենար Հայաստանին:

Միհրդատ ոչ միայն դաշնակից էր Տիգրանին, այլ եւ անոր աներ-հայրը: Լուկուլլոս պահանջեց, որ Հայաստան ապաստանած Միհրդատն, իրեն յանձնուի: Երբ Տիգրան մերժեց այդ պահանջքը, հռովմէական բանակը մտաւ Հայաստան Ք. ա. 70ին, առանց պատերազմի յայտարարութեան: Վճռական ճակատամարտ մը տեղի ունեցաւ Տիգրանակերտի մօտ Ք. ա. 69 Հոկտ. 6ին: Կարգապահ հռովմէական բանակը՝ չահեցաւ յաղ-

[18] Strabo, XI, 14, 15:
[19] Justus, XL, 1, 1—3:
[20] Appian, Mith. 67; Strabo XII, 2, 9:
[21] Plutarch, Pomp., XXVIII, 4:
[22] Plutarch, XXI, 2:

թանակը եւ Տիգրանակերտն ալ գրաւուեցաւ, քանի մը ամիս պաշարումէ յետոյ: Պլուտարքոսի պատմածին համաձայն, Լուկուլլոս իբր աւար առաւ ութը հազար տաղանդ, եւ ասկէ զատ իւրաքանչիւր հռոմէական զինուոր ստացաւ ութը հարիւր դրամի (տրախմայի) գումար մը[23]: Այս թիւերը գաղափար մը կու տան Տիգրանի անհագին հարստութեան մասին:

Տիգրան՝ Միհրդատի խորհուրդին անսալով՝ իր բանակը վերակազմեց եւ սկսաւ գործածել նոր ռազմահնարք մը Հռոմայեցիներուն դէմ. այն է՝ մշտական յարձակումներ՝ առանց վճռական խոշոր ճակատամարտի, իրմէ աւելի զօրաւոր հռոմէական ուժերուն դէմ:

Լուկուլլոս ուզելով վճռական կռիւ մը, որոշեց քալել Տիգրանի մայրաքաղաքին վրայ: Տիգրան ստիպուած թշնամւոյն դէմ ելաւ. Արտաշատի մօտ երկու ուժերը բախեցան[24]: Թէեւ Հռոմէացիք յաղթական ելան պատերազմէն, սակայն այնքան ծանր կորուստներ ունեցան հայ հեծելազունդին յարձակումներէն, որ հռոմէական զինուորները կը խորհէին ապստամբիլ: Լուկուլլոս ստիպուեցաւ արագօրէն նահանջել. իսկ Տիգրան յաջողեցաւ թէ իր եւ թէ Միհրդատի հողերը ազատել:

---

[23] Plutarch, Lucullus, XXIX, 3:

[24] Plutarch, Lucullus, XXXI, 7—8; Cass. Dio XXXVI, 4—5.

Ի տես այդ աղէտալի կացութեան, Հռովմէական ծերակոյտը Պոմպէոսի յանձնեց, որ Տիգրանի դէմ պատերազմը չարունակէ։ Պոմպէոս պարտութեան մատնեց Միհրդատը եւ ղրկեց Պարթեւները որ Տիգրանի վրայ յարձակին։ Նոյն ատեն նաեւ յաջողեցաւ համոզել Տիգրանի որդին — Կրտսեր Տիգրանը — որ իր հօրը դէմ դաւադրէ։ Երբ Պոմպէոս իր լէգէոններով մօտեցաւ Արտաշատին՝ օգնութեամբ Կրտսեր Տիգրանի ուժերուն, ալեւոր արքան գնաց Պոմպէոսի բանակատեղին եւ ընդունեցաւ անոր պայմանները։ Պոմպէոս ստացաւ վեց հազար տաղանդ, բայց թոյլատրեց որ Տիգրան պահէ իր «Արքայից Արքայ» տիտղոսը ու նաեւ Հայաստանի բնիկ հողերը։ Փոքր Ասիոյ միւս բոլոր մեծ ու պզտիկ թագաւորութիւնները դարձան՝ պարզ հռովմէական նահանգներ։

Իրականութեան մէջ Հայաստան դարձաւ չէզոք գօտի մը Հռովմի եւ Պարթեւաստանի միջեւ։ Տիգրան իշխեց մինչեւ Ք. ա. 56—55 թուականը, ինչպէս կ'իմացուի Կիկերոնի մէկ ճառէն[25]։ Այսպէս, Ք. ա. 54ին, Կրասոսի պատերազմներու ժամանակ, Տիգրանի որդին՝ Արտաւազդ Բ.ը՝ Հայաստանի թագաւոր էր։

Կրասոս մտաւ Միջագետք Ք. ա. 54ին եւ տարաւ քանի մը յաղթանակներ Պարթեւներուն դէմ։ Սակայն փոխանակ իր

[25] Pro Sestio, XXVII, 59:

Münzen der Artaxiaden-Dynastie



*յաղթութիւններէն օգտուելու, ան սպասեց ամբողջ տարի մը եւ այսպէս հնարաւորութիւն տուաւ Պարթեւ Որոդէսին, որ պատերազմի պատրաստուի: Յաջորդ տարին առաջնորդութեամբ Սուրէնի, որ կարող զօրավար մըն էր, Պարթեւները մտան Միջագետք. նոյն ատեն արշաւեցին նաեւ Հայաստան, քանի որ Հայաստան դաշնակից էր Հռովմէացիներուն: Արտաւազդ Կրասոսին պատգամաւորներ հասցուց, բացատրելով որ ինք չէր կրնար Հռովմէացիներուն օգնել, որովհետեւ ստիպուած էր իր երկիրը պաշտպանել Պարթեւներուն դէմ[26]: Այս առթիւ խորհուրդ տուաւ Կրասոսին, որ լեռնային շրջաններու մէջ պահէ իր բանակը, որպէս զի զոհ չերթայ հեծելազօրքի յարձակումներուն: Կրասոս անտեսեց այս խորհուրդը, եւ հետեւանքն այն եղաւ որ նշանաւոր Խառանի ճակատամարտին մէջ հռովմէական բանակը փճացաւ եւ Կրասոս սպանուեցաւ:*

*Ինչպէս որ Հռովմէացիք՝ Պոմպէոսի ատեն՝ ուզեցին որ Հայաստան իրենց դաշնակից ըլլայ՝ ընդդէմ Պարթեւաստանի, Որոդէս նոյն բանը պահանջեց Հռովմի դէմ: Ան դաշնակցեցաւ Հայերուն հետ եւ իր որդին ամուսնացուց Արտաւազդի քրոջ հետ: Արտաշատի մէջ տեղի ունեցած ամուսնական հանդիսութեանց միջոցին՝ ցուցադրուեցաւ նաեւ Կրասոսի գլուխը:*

*Հայ–Պարթեւական բանակը հայ հրա-*

---

[26] Plutarch, Crassus, XXII, 2:

մանատար Ոսակէսի (Osaces) առաջնորդութեամբ յառաջացաւ մինչեւ Անտիոք, բայց չյաջողեցաւ այս քաղաքը գրաւել: Հռոմի մէջ Պոմպէոս եւ Յուլիոս Կեսար՝ իրարու դէմ քաղաքական կռիւներով՝ զբաղած ըլլալով՝ Արեւելքի կարեւորութիւն չէին կրնար տալ: Հայ-Պարթեւական բանակները Արտաւազդի փեսայ Բակուրի հրամանատարութեամբ գրաւեցին Սուրիան, Փիւնիկէն եւ Պաղեստինը: Նորէն այս երկիրներու բնակիչները փոխադրուեցան Հայաստան՝ լեցնելու համար քաղաքները, որոնք պարպուած էին նախկին կռիւներու ընթացքին:

Վերջապէս Հռոմ Արեւելեան երկիրները յանձնեց Մարկոս Անտոնիոսի, ու զօրաւոր բանակով մը գրկեց արեւելք, Ք. ա. 39ին: Յաջորդ տարին Պարթեւները ծանր պարտութիւն մը կրեցին: Բակուր սպաննուեցաւ այս կռուին մէջ, խոր սուգի մատնելով իր հայրը՝ Որոդէսը: Ծերունի արքան գահը տուաւ իր որդւոյն՝ Հրահատ Դ.ի, որ — իր դիրքը ամրապնդելու համար — սրէ անցուց ոչ միայն իր բոլոր եղբայրները, այլ նաեւ իր ծերունի հայրը: Այս քայլը երկրին մէջ երկպառակութիւն յառաջ բերաւ եւ յարմար առիթ մը ներկայացուց Մ. Անտոնիոսի: Թէեւ Անտոնիոս մտադիր էր Հայաստան նահանգի վերածել, սակայն խոհեմութիւն համարեցաւ բարեկամական կապեր հաստատել Արտաւազդի

հետ. եւ այսպէս Հայաստան Ք. ա. 37ին նորէն Հռոմի դաշնակից դարձաւ:

Մարկոս Անտոնիոս հետեւեցաւ այն խորհուրդին, որ Արտաւազդ տուած էր կրասոսին: Հռոմէական բանակը անցաւ Հայաստանի մէջէն եւ հիւսիսէն մտաւ Պարթեւաստան: Այս հսկայ բանակը, որ կը բաղկանար Հռոմայեցիներէ, Սպանացիներէ եւ Գաղղիացիներէ՝ անցաւ իր ռազմական կազմով Հայաստանի մէջէն, ինչպէս կը նկարագրէ Պլուտարքոս[27]: Այսպիսի շարժում մը միայն կարելի էր լայն ու լաւ սալարկուած ճամբաներու միջոցաւ, եւ այս կ՚ապացուցանէ որ առաջնակարգ ճամբաներ գոյութիւն ունէին լեռնային Հայաստանի մէջ: Հռոմէական բանակները իրենց նպատակին չհասան, եւ աշնան ստիպուեցան նահանջել: Արտաւազդ քաշուեցաւ Հայաստան եւ Հռոմայեցիք ենթակայ եղան Պարթեւներու մշտակայ յարձակումներուն:

Հռոմէական կորուստները շատ ծանր էին եւ Անտոնիոս մեղադրեց Արտաւազդը, որ զինք լքած էր իր նեղ պարագային: Հետեւաբար, մտադրեց Արտաւազդը պատժել եւ Հայաստանը նուաճել: Եւ նախ՝ հրաւիրեց Արտաւազդը որ Եգիպտոս այցելէ. բայց այս հրաւէրը մերժուեցաւ[28]: Յաջորդ տարին, Ք. ա. 34ին, Անտոնիոս նորէն հրաւիրեց Արտաւազդն, որ իրեն այցելէ, իբր թէ

[27] Plutarch, Antonius, XXXVII, 2:
[28] Cass. Dio XLIV, 33, 2—3:

իր տղուն եւ Արտաւազդի աղջկան ամուսնութեան հարցը կարգադրելու. սակայն Արտաւազդ դարձեալ չինկաւ լարուած ծուղակին մէջ: Ճարահատ Անտոնիոս յանկարծ յարձակեցաւ Հայաստանի վրայ եւ մօտեցաւ Արտաշատին: Արտաւազդ հարկադրուած՝ գնաց Անտոնիոսի բանակատեղին եւ այս վերջինը զինք կալանաւորեց՝ հակառակ եղած խոստումներուն՝ թէ Արտաւազդ անձեռնմխելի պիտի մնար:

Այս արարքէն վերջ Անտոնիոս փորձեց Հայաստանի քաղաքները թալանի տալ եւ հարստութիւնը գրաւել: Սակայն հայ նախարարները հակառակեցան եւ Արտաւազդի որդին Արտաշէս Բ.ը թագաւոր հռչակեցին: Մարկ. Անտոնիոս ուժգնօրէն հետապնդեց իր քաղաքականութիւնը եւ երկիրը աղքատացուց: Արտաշէս ստիպուեցաւ փախչիլ Պարթեւստան: Անտոնիոս Ք. ա. 34ին գնաց Եգիպտոս միանալու իր սիրուհիին՝ Կղէոպատրային, տանելով իր հետ Արտաւազդը եւ անոր երկու որդիները՝ Տիգրան Գ. եւ Արտաւազդ Գ., ու թագաւորական ընտանիքէն ուրիշ անդամները: Ի յիշատակ իր այս յաղթութեան, Անտոնիոս հատանեց դրամներ, որոնց վրայ գրուած են Armenia devicta այսինքն՝ «Հայաստան պարտեալ»:

Օկտաւիանոսի հակառակութիւնը Անտոնիոսի դէմ՝ պատճառ եղաւ որ Հռովմի ծերակոյտը Ք. ա. 32ին վերջինս յայտարարէ

Հռոմի թշնամի: Ակտիումի (Actium) ճակատամարտին մէջ Ք. ա. 31ին, Անտոնիոս պարտուեցաւ եւ յաջորդ տարին անձնասպան եղաւ: Այս ժամանակամիջոցին Կղէոպատրայ յուսալով աջակցութիւնը Ատրպատականի Արտաւազդին, գլխատել տուաւ Հայոց Արտաւազդ Բ. Թագաւորը:

Ոկտաւիանոսի եւ Անտոնիոսի պայքարներու միջոցին, Հայոց Արտաշէս Բ. Թագաւորը՝ հաւանաբար Պարթեւներու օգնութեամբ՝ իր գահը վերահաստատեց Հայաստանի վրայ: Երկիրը լաւ կազմակերպուած էր եւ Մեծն Տիգրանի յիշատակները դեռ թարմ էին Հայոց մէջ: Արտաշէս յաջողեցաւ երկիրն ընդարձակել՝ նուաճելով Ծոփքը, Փոքր Հայքն ու շրջակայ երկիրները. միաժամանակ քաջալերեց օտար ժողովուրդները, որ գան ու բնակին Հայաստանի մէջ: Իր նպատակն էր արդիլել հռոմէական ծրագիրն՝ որ էր Հայաստանը վերածել պարզ նահանգի մը, նման Սպանիոյ եւ Գաղղիոյի, ուր ջնջուած էին ազգային բնագիծերը:

Այսպէս Ք. ա. 30—20, Արտաշէս տիրեց անկախօրէն[29]: Ոկտաւիանոս Անտոնիոսի դէմ մղած պայքարներու ընթացքին տկարացած ըլլալով՝ չուզեց միջամտել Հայաստանի ներքին գործերուն: Սակայն դիւանագիտական միջոցներ ձեռք առաւ տկարացնելու թէ՛ Հայաստանը եւ թէ՛ Պարթեւստանը, նպատակ ունենալով երկուքին ալ

[29] Tacitus, Annales II, 3:

նուաճումը։ Հռովմէական ուժի ցուցադրումը ստիպեց Պարթեւները, որ վերադարձնեն հռովմէացի գերիները եւ այն դինանշանները՝ որոնք Սուրէն գրաւած էր։ Հայաստանի մէջ հռովմէասէր կուսակցութիւնը խնդրեց Օկտաւիանոսէն, որ Արտաւազդ Բ.ի որդին Տիգրանը Հայաստան ղրկէ իբր Հայոց թագաւոր։ Արտաշէս Բ.ը սպաննուեցաւ եւ հռովմէացի զօրավարը՝ Տիբերիոս Կղաւդիոս Ներոն՝ Հայոց թագաւոր կարգեց Տիգրան Գ.ը[30]։ Հռովմէացիք այսպէս հասան իրենց նպատակին եւ Հայաստան՝ առանց պատերազմի՝ նորէն ինկաւ Հռովմի ազդեցութեան տակ։ Ատրպատականը որ նուաճուած էր Արտաշէս Բ.ի կողմէ, տրուեցաւ Արիոբարզանէս Բ.ի։ Ի յիշատակ իր այս յաջողութեան Տիբերիոս հատանեց դրամներ Armenia capta այսինքն՝ «Հայաստան նուաճեալ» գրութեամբ։

Հայերը շատ լաւ տեղեակ էին վտանգին։ Անոնց համար Հռովմը մահացու թըշնամի մըն էր, որուն միակ նպատակն էր՝ ջնջել Հայոց ազգային դիմագիծը։ Միւս կողմէն Պարթեւները բնական դաշնակիցներն էին Հռովմի դէմ ու վտանգ չէին սպառնար հայ ազգին։ Իրականութեան մէջ Հայաստան դեռ զօրաւոր երկիր մըն էր, այնքան զօրաւոր՝ որքան Պարթեւստան. բայց Հայաստան հռովմէական կայսրութեան սահմանա-

---

[30] Tacitus, Annales II, 3,

կից ըլլալու դժրախտութիւնն ունէր: Ինչպէս Պոնտոսը պէտք եղաւ ջնջել՝ Հայաստան արշաւելէ առաջ, նոյնպէս նաեւ Պարթեւաստանը ծունկի բերելու համար՝ նախ պէտք էր խորտակել Հայաստանը:

Տիգրան Գ. մեռաւ Ք. ա. 8—6ին: Անոր յաջորդեց Տիգրան Դ., որ ամուսնացած էր իր կէսքրոջ՝ Երատոյի հետ: Թագաւորութիւնը տեղի ունեցաւ առանց Հռոմի հետ խորհրդակցութեան կամ համաձայնութեան: Այս պատճառաւ հռոմէական բանակ մը Հայաստան մտաւ, Տիգրան Դ.ը գահազուրկ ըրաւ եւ Արտաւազդ Գ.ը, որ Տիգրան Գ.ին եղբայրն էր, գահ բարձրացուց:

Հայերը աժգոհ այս արարքէն. յարձակեցան հռոմէական պահակազօրքի վրայ եւ ստիպեցին Արտաւազդը որ փախչի[31]: Տիգրան Դ., որ հաւանական է թէ Պարթեւաստան ապաստան գտած էր, վերադարձաւ Հայաստան Ք. ա. 2ին: Հռոմ դարձեալ բանակ մը ուղարկեց Հայաստան. Պարթեւները հաշտութիւն խնդրեցին եւ Հայերը հետեւեցան անոնց: Համաձայնութիւն գոյացաւ որ Տիգրան իր թագը ստանայ Օգոստոս կայսրէն. բայց այնպէս կ՝երեւի թէ Տիգրան սպանուեցաւ հիւսիսի բարբարոսներու դէմ մղուած կռուի ընթացքին, Ք. ե. 1ին[32]:

---

[31] Tacitus, Annales, II, 4; Velleius Paterculus, II, 94, 4:

[32] Cass. Dio LV, 10, 5:

Տիգրան Դ.ի մահով՝ միակ անձը, որ Արտաշէսեան արքայական սերունդէն էր՝ անոր քոյրը Երատոն կը մնար։ Գայոս Կեսարը՝ Հայոց գահը տուաւ Ատրպատականի Արիոբարզանէս Բ.ի, որ որդին էր Հռոմի հաւատարիմ դաշնակից՝ Ատրպատականի թագաւոր Արտաւազդին։ Հայ նախարարները չընդունեցան օտար թագաւոր մը եւ ապստամբեցան։ Գայոս զսպեց ապստամբութիւնը, եւ երկու տարի վերջ երբ Արիոբարզանէս մեռաւ, Հայոց գահը տրուեցաւ անոր որդւոյն Արտաւազդ Դ.ի, որ իշխեց թէ՛ Ատրպատականի եւ թէ՛ Հայոց վրայ Ք. Ե. 4—6 թուականներուն։

Հայ իշխանները կրկին ապստամբեցան եւ սպաննեցին այս օտար թագաւորը՝ համաձայն Տակիտոսի[33]։ Տեսնելով որ Հայերը կարելի չէր կառավարել օտար իշխաններով, Օգոստոս կայսրը Հայաստան ղրկեց Տիգրան Ե.ը, որ հեռուէն ազգականական կապեր ունէր Արտաշէսեաններու հետ։ Ան իշխեց հազիւ տարի մը, մինչեւ Ք. Ե. 6 թուականը[34]։ Կ՚երեւի փորձ մը եղաւ Երատոն գահ բարձրացնելու· բայց այս ալ երկար չտեւեց եւ անոր մահով Արտաշէսեան հարստութիւնը վերջ գտաւ։

---

[33] Tacitus, Innales, II, 4:
[34] CAH., Vol. X, էջ 277:

# ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ ՏՈՀՄԱԾԱՌԸ

ԶԱՐԵՀ Ք. ա. 189էն առաջ

*(Արտաշէս Ա.ի արամերէն արձանագրութեան մէջ յիշուած, բայց ոչ իբր թագաւոր)*

ԱՐՏԱՇԷՍ Ա. Ք. ա. 189—160

*(Նախ Անտիոքոս Գ.ի կառավարիչը, եւ յետոյ թագաւոր)*

[left branch]

ԱՐՏԱՒԱԶԴ Ա. 160—123

[right branch]

ՏԻԳՐԱՆ Ա. 123—96

ՏԻԳՐԱՆ Բ. ՄԵԾՆ 95—56

*(Ամուսնացած Պոնտոսի Միհրդատ թագաւորի աղջկան հետ. եւ յետոյ՝ ամուսնացած ԶՈՍԻՄՈՍԻ հետ)*

ԱՐՏԱՒԱԶԴ Բ. 56—34

*(Սպաննուած Կղէոպատրայի կողմէ 30ին Ք. ա.)*

ԱՐՏԱՇԷՍ Բ. 30—20

ՏԻԳՐԱՆ Գ. 20—86

ԱՐՏԱՒԱԶԴ Գ. 5—2

ՏԻԳՐԱՆ Դ.

*Ք. ա. 8—5 եւ յետոյ Ք. ա. 2—1 Ք. ե.*

ԵՐԱՏՈՅ թագուհի

*Տիգրան Դ.ի հետ, յետոյ Թագուհի*

ՏԻԳՐԱՆ Ե. Ք. Ե. 6ին

ԱՂԵՔՍԱՆԴՐ Ք. ա. 34—30, (Անտոնիոսի եւ Կղէոպատրայի որդին.)
ԱՐԻՈԲԱՐԶԱՆԷՍ Ք. Ե. 2—4 (Ատրպատականի թագաւոր)
ԱՐՏԱՒԱԶԴ Դ. Ք. Ե. 4—6, որդի Արիոբարզանէսի:

# Բ.

## ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ԴՐԱՄՆԵՐԸ

Արտաշէսեան դրամները ճանչնալը դժուար չէ։ Անոնք բոլորն ալ ունին հայկական յատկանշական խոյրը (Tiara), որ որոշապէս կը տարբերի այն խոյրէն, որ կը կրէին դրացի Կոմագէնէի եւ Մետայի թագաւորները։ Դարձեալ, իր մասնաւոր ձեւէն զատ, դրամներու վրայ տեսնուած հայկական խոյրը կը ճանչցուի իր ունեցած աստղով եւ ընդհանրապէս ընկերակցող՝ մէկ կամ երկու՝ արծիւներով[35]։

ՁԱՐԵՀ. — Միակ դրամ մը, որ վերագրուած է Արտաշէս Ա.ի հօր Զարեհին՝ պէտք է կեղծ ըլլայ, ինչպէս կը հաստատէ Բասմաջեան[36]։ Թագաւորին գլուխը աջ դարձած է եւ կը կրէ խոյրը։ Առաջին կողմին վրայ կը տեսնուի ΖΑΔΡΙ-ΑΔΟΥ անունը. իսկ բ. կողմին վրայ ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ։ Անկարելի է երեւակայել թէ այս իշխանը, որ հաւանաբար կարգուած էր Սելեւկեաններու կողմէ, յաւակնութիւնը ունենար ինքզինքը «Թագաւոր Թագաւորաց» կոչելու։ Հայկական խոյրը կ'ապացուցանէ, որ այս դրամը Ծոփքի Զարեհին չի պատկանիր. որովհետեւ Ծոփքի թագաւորները բոլորովին տարբեր տեսակ գլխարկ կը կրեն իրենց դրամներուն

[35] J. H. Young, Am. Journ. Arch. 1964, էջ 30, Տխ. 11։

[36] Կ. Յ. Բասմաջեան, Հայկ. ընդհ. Դրամագիտութիւն, Վենետիկ 1936, էջ 32։

վրայ։ (Տես՝ Babelon, Rois de Syrie, էջ CXCVII—CXCIX)։

ԱՐՏԱՇԷՍ Ա․ եւ ԱՐՏԱՒԱԶԴ Ա․ — Մինչեւ հիմա որեւէ դրամ գտնուած չէ, որ կարելի ըլլայ վերագրել Արտաշէս Ա․ի եւ իր որդւոյն Արտաւազդ Ա․ի։

ՏԻԳՐԱՆ Ա․ — Seyrig[37] իր Մծբինի դրամագիւտի ուսումնասիրութեան մէջ՝ վերաքննեց Արտաշիսեան դրամները եւ այս դրամագիւտին մէջ գտնուած 11 պղինձէ Տիգրանի դրամները՝ տուաւ Տիգրան Բ․ի։ Ես կը կարծեմ թէ աւելի զօրաւոր փաստեր կարելի է մէջբերել եւ այս դրամները տալ ոչ թէ Տիգրան Բ․ի, այլ անոր հօր՝ Տիգրան Ա․ի։ Հոս պէտք է յիշել թէ այս դրամագիւտին մէջ կային 715 պղինձէ դրամներ, որոնցմէ 624ը որոշ թագաւորներու վերագրուած են։ Այս դրամներու թուականները կ՚երկարին Ք․ ա․ 147էն մինչեւ Ք․ ա․ 31․ մեծամասնութիւնը կը պատկանի վերջին շրջանին։

Հետեւեալ փաստերը կը ստիպեն որ այս 11 պղինձները վերագրենք Տիգրան Ա․ի

1․ Տիգրան Ա․ իշխեց Ք․ ա․ 123—96 թուականներուն․ իսկ Տիգրան Բ․ Ք․ ա․ 95—56 թուականներուն։ Մծբինի դրամագիւտը այս երկու թագաւորներու իշխանութեան շրջանին կը պատկանի, այնպէս որ՝

---

[37] H. Seyrig, Revue Numismatique, 1955, էջ 85—128։

թուականներու յենլով՝ կարելի չէ ըսել թէ ո՞ր Տիգրանին են պղինձները։

2․ Seyrig կ'ըսէ թէ այս 11 պղինձներուն 9 հատը կը կրեն հետեւեալ թուականները՝ 16,30 եւ 41։ Ան կը խորհի թէ այս թիւերը թագաւորին իշխանութեան տարիները կը ցուցնեն։ Եթէ այդպէս են՝ առաջին երկու թիւերը կրնան տրուիլ Տիգրան Ա․ին կամ Բ․ին։ Տիգրան Բ․ իշխեց 39—40 տարի՝ 95—56 Ք․ ա․։ Թերեւս 41 թիւը տրուի իր իշխանութեան վերջի տարիին։ Բայց Մակդոնալդ[38] կը հաստատէ թէ այս տեսակ թիւերը, թագաւորին իշխանութեան տարիներուն չեն համապատասխաներ եւ տարբեր թուականի սիստեմի կը պատկանին։ Պէտք է նաեւ յիշել, որ Տիգրան Բ․ի զանազան տիպի պղինձներէն միայն մէկ տեսակն այս թիւերն ունի։

3․ Seyrig իրաւացիօրէն կը մատնանշէ թէ այս 11 պղինձներ՝ Տիգրան Բ․ի ծանօթ պղինձներէն բոլորովին տարբեր կերպարանք մ'ունին։ Տարբերութիւնը այնքան աչքի կը զարնէ, որ իրաւունք չունինք այս դրամները Տիգրան Բ․ի վերագրել։

4․ Ասկէ զատ, այս բոլոր 11 պղինձներուն վրան թագաւորին գլուխը ձախ դարձած է․ մինչ Տիգրան Բ․ի միւս բոլոր պղինձ եւ արծաթ դրամներուն վրայ՝ թագաւորին գլուխը միշտ աջ դարձած է։ Ասոր պատ–

---

[38] G. MacDonald, Numismatic Chronicle, 1902, էջ 193—201։

ճառը այն է որ Տիգրան Բ.էն առաջ Հայաստան կապուած էր Պարթեւաստանի թէ քաղաքական եւ թէ մշակութային կապերով: Տիգրան Բ.էն առաջ իշխող հայ թագաւորները՝ հաւանական է՝ կոխեցին դրամներ գլուխը ձախ դարձած, հետեւելով պարթեւ սովորութեան: Տիգրան Բ. սակայն սկիզբէն հակառակեցաւ Պարթեւներուն եւ քաջալերեց յունական քաղաքականութիւնը: Այսպէս Հայաստան արեւմուտք դարձաւ ու որդեգրեց յունական եւ սելեւկեան դրամներու տիպը:

5. Բոլոր 11 պղինձներու գրութիւնը կը կարդացուի՝

ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ || ΤΙΓΡΑΝΟΥ
ΒΑCΙΛΕΩC | ΤΙΓΡΑΝΟΥ || ΦΙΛΕΛΛΗΝΟC
ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ || ΤΙΓΡΑΝΟΥ |
ΦΙΛΕΛΛΗΝΟC

եւ այսպէս հիմնովին կը տարբերին այն բոլոր գրութիւններէն, որ կը տեսնենք Տիգրան Բ.ի դրամներուն վրայ: Զօրաւոր փաստ մըն է այս. հետեւաբար, 11 պղինձները պէտք է Տիգրան Ա.ի վերագրենք:

6. Մօտ 63 Տիգրան Բ.ի պղինձ դրամներ ծանօթ են ինծի. բոլորն ալ թագաւորին գլուխն աջ դարձած: Ասկէ զատ, զանազան թանգարաններու մէջ կը գտնուին 4 հատ պղինձներ Մծբինի դրամներուն նման: Այսպէս. մինչեւ Մծբինի դրամագիւտին երեւան գալը, ամէն մէկ ձախ դարձածին դէմ

*կար՝ 16 հատ ալ դարձած Տիգրան Բ.ի դրամներ։ Եթէ Մծբինի պղինձները կը պատկանէին Տիգրան Բ.ի, այն ատեն պիտի սպասէինք որ այս դրամագիւտին մէջ ըլլար 176 կտոր հասարակ Տիգրան Բ.ի պղինձներ։ Քանի որ ոչ մէկ հատ Տիգրանի հասարակ պղինձ կար, ուրեմն պէտք է հետեւցնել որ այս դրամագիւտը Տիգրան Բ.ի որեւէ դրամ չէր պարունակեր։*

*7. Վերջերս ստացայ Տիգրանեան դրամագիւտ մը, որ կը պարունակէր 7 պղինձներ։ Ասոնցմէ վեցը երեք տեսակ ծանօթ Տիգրանի պղինձներ էին. իսկ եօթներորդը իր յաջորդին դրամը։ Հարկ է չեշտել թէ ասոնցմէ ոչ մէկը Մծբինի պղինձներէն էր։*

*Ուրեմն կրնանք բաւական վստահութեամբ՝ այս Մծբինի 11 պղինձները տալ Տիգրան Ա.ի։*

ՏԻԳՐԱՆ Բ. ՄԵԾՆ. — *Որովհետեւ Տիգրան Բ. երկար ժամանակ թագաւորեց եւ քաղաքական մեծ յաջողութիւններ ունեցաւ, մեզի հասած Արտաշէսեան հարստութեան դրամներու մեծամասնութիւնը կը պատկանի այս թագաւորին։*

*Զորեքդրամներ, դրամներ եւ մեծ ու փոքր պղինձներ կոխուած են Տիգրանի կողմէ. բայց ծանօթ բոլոր ոսկիները կեղծ են*[39]*։ Զորեքդրամներուն մեծամասնութիւնը էջ 303—306։*

---

[39] P. Bedoukian, Museum Notes, XI, 1964,

եղած են Անտիոքէն․ բայց կան նաեւ օրինակներ Դամասկոսէն[40] եւ թերեւս նաեւ Տիգրանակերտէն[41]: Դրամները վստահաբար կոխուած են բուն Հայաստանի մէջ[42], հաւանաբար՝ նոր մայրաքաղաք Տիգրանակերտի մէջ: Չորեքդրամները ունին գրութիւն ΒΑΣΙΛΕΩΣ | ΤΙΓΡΑΝΟΥ եւ շատ հազուադէպօրէն ΒΑΣΙΛΕΩΣ || ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ արեւելքի սովորութեան համաձայն: Կարելի է որ Տիգրան Անտիոքէն վարպետներ բերել տուած է իր նոր մայրաքաղաքին համար: Այս հնարաւորութիւնը կը բացատրէ թէ ինչո՛ւ չորեքդրամներու եւ դրամներու արուեստները նման են իրարու, թէեւ կոխուած տարբեր քաղաքներու մէջ:

Մեծն Տիգրանի պղինձները քանի մը տեսակներ կը ներկայացնեն: Անտիոքի տիպով պղինձները կը նմանին դրամներուն եւ կը կարդացուին ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ || ΤΙΓΡΑΝΟΥ թէեւ այս պղինձներուն կշիռը իրարմէ շատ կը տարբերի․ սակայն տարակոյս չկայ որ անոնք կոխուած էին իբր պղինձ, կէս-պղինձ ու թերեւս մէկ-երրորդ պղինձ:

Ուրիշ տեսակ պղինձ մը կոխուած Դամասկոսի մէջ[43], կը ներկայացնէ Դամաս-

---

[40] E. T. Newell, Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus (New York, 1939) էջ 95—100:

[41] «Թագաւոր Թագաւորաց» տիտղոսը արեւելեան փողերանոցէն է:

[42] Newell p. 98 and MacDonald, p. 193—201:

[43] Newell, p. 100:

կողի Բախտը և գրութիւնը ΒΑΣΙΛΕΩΣ || ΤΙΓΡΑΝΟΥ ։

Տիգրանի երրորդ տեսակ պղինձն ունի Վահագնը, որ աջ ձեռքով բռնած է լախտ մը, իսկ ձախով՝ առիւծի մորթ ։ Թագաւորին տիտղոսը ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ կը թելադրէ, որ այս տեսակ դրամը կոխուած է Հայաստանի մէջ, հաւանաբար Արտաշատ ։ Այս տեսակէն թէև պղինձ և կէսպղինձ գտնուած են, սակայն մէկ–երրորդ պղինձ ծանօթ չէ ։

Չորրորդ տեսակը կը ներկայացնէ յաղթանակը որ ձախ կը քալէ, իր աջ ձեռքին ունենալով թագ մը ։ Թագաւորին տիտղոսը՝ ΒΑΣΙΛΕΩΣ || ΤΙΓΡΑΝΟΥ կը ցուցնէ թէ այս դրամը կոխուած է սելեւկեան փողերանոցի մը մէջ ։ Կարապետեանի[44] կարծիքը թէ այս դրամը կոխուած է Դամասկոս՝ ընդունելի չէ, ինչպէս վստահօրէն մատնանշած է Լը Ռիդէռ[45], և ասոր կարծիքը թէ՝ Անտիոքի փողերանոցէն ելած է, ընդունելի կ'երեւի ։ Այս դրամէն պղինձներ և կէսպղինձներ ծանօթ են ։

Այս չորս որոշ տեսակներէն զատ, որոնք կը ներկայացնեն Տիգրանի պղինձներուն մեծամասնութիւնը, կան նաև քանի մը ուրիշ տեսակներ, որոնց ո՛ր կոխուած

---

[44] Պ. Կարապետեան, CIN, Vol. 2, Actes (Paris 1953), էջ 133—136 ։

[45] G. Le Rider, Revue Numismatique, 1959/1960, p. 22—24:

ըլլալը վստահօրէն չենք գիտեր: Գիտենք սակայն որ Տիգրան որոշ ժամանակ մը՝ տիրեց ընդարձակ հողերու. եւ կարելի է որ այս դրամներէն ոմանք կոխուած ըլլան այս նուաճուած հողերու փողերանոցներու մէջ:

ԱՐՏԱՒԱԶԴ Բ., Ք. ա. 56—34: Հակառակ իր երկարատեւ իշխանութեան, այս թագաւորին դրամները հազուագիւտ են: Ունինք դրամներ եւ պղինձներ այս արքայէն, ու վերջերս գտնուած չորեքդրամը[46] կը լրացնէ իր դրամներու շարքը:

Հաւանական է որ չորեքդրամը կոխուած է Արտաշատի մէջ: Առաջին կողմը կը տեսնուի յատկանշական հայկական խոյրը. իսկ երկրորդ կողմը բոլորովին նոր տեսակ պատկերատիպ մը, այն է՝ ձախ ընթացող սրարշաւ քառաձի կառք մը, զոր կը վարէ թագաւորը. իսկ տիտղոսն է՝ ΒΑCΙΛΕΩC | ΒΑCΙΛΕΩΝ | ΑΡΤΑΥΑΖΔΕΩ | ΘΕΙΟΥ:

Դրամները տիպով կը նմանին չորեքդրամին եւ ունին տիտղոսը՝ ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ | ΑΡΓΑΥΑΖΔΟΥ:

Պղինձներն ալ, որոնցմէ միայն երկու հատ ծանօթ է, կը ներկայացնեն նոր տիպ մը, — Յաղթանակը ձախ դարձած. իսկ գրութիւնն է՝ ΒΑCΙΛΕΩC | ΒΑCΙΛΕΩΝ ΑΡΤΑΥΑCΔΟΥ:

ԱՂԵՔՍԱՆԴՐ, Ք. ա. 34—30, Անտո–

---

46 Պատմա-բանասիրական Հանդէս, 2, 1964, էջ 317—23:

նիոսի եւ Կղէոպատրայի որդին: Մարկոս Անտոնիոս իր վեց տարեկան որդին Հայաստանի թագաւոր կարգեց. բայց չենք գիտեր թէ անոր անունով որեւէ դրամ կոխուա՞ծ է թէ ոչ:

ԱՐՏԱՇԷՍ Բ., Ք. ա. 30—20: Երբ Անտոնիոս Յունաստան գնաց Ոկտաւիանոսի դէմ կռուելու, առիթը ներկայացաւ որ Հայերը իրենց թագաւորութիւնը վերհաստատեն: Արտաւազդի անդրանիկ որդին Արտաշէս, որ Պարթեւներու Հրահատ Դ.ի արքունիքը ապաստան գտած էր, վերադարձաւ Հայաստան եւ Ք. ա. 30ին հռչակուեցաւ թագաւոր: Սակայն որեւէ դրամ չէ վերագրուած այս թագաւորին, որ ամբողջ տասը տարի տիրապետեց:

Վերջերս իմ ձեռքս անցաւ եօթը պղինձներու դրամագիւտ մը, որ գտնուեցաւ Տիգրանակերտէն ոչ շատ հեռու գիւղի մը մէջ: Ասոնցմէ վեցը Տիգրան Բ.ի ծանօթ տեսակներն էին, բայց եօթներորդը նոր տեսակ մըն էր, ունենալով առաջին կողմը յատկանշական հայկական խոյրը եւ միւս կողմը մարդու պատկեր մը: Դժբախտաբար դրութիւնը կարելի չեղաւ կարդալ: Այս դրամին երկրորդ կողմը շատ տարբեր է միւս Տիգրանեան դրամներէն եւ դրութեան տառերը կլորակ ձեւով են եւ ոչ թէ չիտակ գիծով կամ քառակուսի: Թէեւ կարելի չեղաւ կարդալ թագաւորին անունը, բայց խորհեցանք այս դրամը վերագրել Արտաշէս Բ.ի:

ՏԻԳՐԱՆ Գ., Ք. ա. 20—8/9: Արտաշէս Բ.ի յաջորդեց իր կրտսեր եղբայրը· անոր թագաւորութեան միջոցին Հայաստան եւ Պարթեւաստան միասին ջանացին՝ Հռովմէական նուաճողական քաղաքականութեան դիմադրել:

Նիւէլ այս արքային մէկ արծաթ դրամին մասին գրեց[47], մատնանշելով որ Ա. կողմը թագաւորը թեթեւօրէն մօրուաւոր է, իսկ միւս կողմը ցոյց կու տայ դէպի ձախ կանգնած մօրուաւոր Տիգրանը:

Պղինձներու Ա. կողմը արծաթին կը նմանի. մասնաւորաբար նկատի առնելով խոյրը իր հինգ երկայն ծայրերով եւ խոշոր ութատամեան աստղով, առանց սակայն արծիւներու: Պղինձներու վրայ սակայն թագաւորն անմօրուս է:

Արծաթին վրայի գրութիւնը կը կարդացուի՝ ΒΑΣΙΛΕΩΣ | ΜΕΓΑΛΟΥ | ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΟΠΑΤΟΡΟΣ | ΚΑΙ | ΦΙΛΕΛΛΗΝΟΣ:

Պղինձներու գրութիւնն ալ նորութիւններ կը ներկայացնէ: Հոս գրութիւնը քառակուսի մը կը կազմէ եւ կը կարդացուի՝ ΒΑΣΙΛΕΩΣ | ΜΕΓΑΛΟΥ | ΤΙΓΡΑΝΟΥ | ΘΕΟΥ: Քառակուսիին մէջ կան անասուններ, ինչպէս՝ փիղ մը, ձի մը եւ կամ առիւծի գլուխ մը:

Տիգրան Գ.ի ժամանակ Հայաստան եւ Պարթեւաստան միացան Հռոմի դէմ: Թեր-

[47] E. T. Newell, Some Unpublished Coins of Eastern Dynasts, (New York 1926), p. 13—15. Note II:

եւս այս պատճառաւ ալ հայկական դրամներու դրութիւնը, պարթեւականի նմանիլ սկսաւ եւ մանաւանդ ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΣ պարթեւական ազդեցութիւն կը կրէ:

ՏԻԳՐԱՆ Դ., Ք. ա. 8—5 եւ Ք. ա. 2—1 Ք. ե.: Տիգրան Դ. գահ բարձրացաւ Ք. ա. 8ին, առանց սակայն Հռոմի հետ խորհրդակցելու: Հռոմէացիք զինքը գահէն վար առին Ք. ա. 5ին. բայց Ք. ա. 2ին նորէն գահ բարձրացաւ, շնորհիւ Պարթեւներու օգնութեան: Ներկայիս կարելի չէ այս երկու թագաւորական շրջաններուն կոխուած դրամներն իրարմէ զանազանել: Այս թագաւորին կու տանք այն դրամները, որոնց վրայ կը տեսնուի երկայն մօրուքով արքան, եւ այսպէս բոլորովին տարբեր է նախկին Տիգրան անունով դրամներէն: Քանի որ միայն այս Տիգրանը մնացած է Արտաշէսեան հարստութեան պատկանող, տրամաբանական է անոր վերագրել այս դրամները: Երեք տեսակ պղինձներ ծանօթ են մեզի, բոլորն ալ Ա. կողմը ունենալով միանման մօրուսաւոր թագաւորին գլուխը: Պղինձներուն Բ. կողմը կը տարբերին իրարմէ, ինչ որ կը նշանակէ թէ կամ տարբեր փողերանոցներէ ելած են եւ կամ պատկերատիպի փոփոխութիւն եղած է ժամանակներուն ընթացքին:

Գրութիւնները թէեւ տարբերութիւններ կը ներկայացնեն, բայց անիկա արդելք

մը չէ որ դրամները նոյն արքային վերագրենք:

Գրութիւններն են՝ ΒΑΣΙΛΕΩΣ | ΤΙΓΡΑΝΟΥ եւ ΒΑΣΙΛΕΩΣ | ΜΕΓΑΛΟΥ | ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΕΛΛΗΝΟΣ

ԱՐՏԱՒԱԶԴ Գ., Ք. ա. 5—2: Տիգրան Դ.ի իշխանութիւնն ընդհատեցաւ Հռովմէացիներու կողմէ, որոնք անոր հօրեղբայրը՝ Արտաւազդը դրին գահուն վրայ: Այս վերջինս տիրեց երեք տարի, բայց իրեն վերագրելու որեւէ դրամ ծանօթ չէ մեզի:

ՏԻԳՐԱՆ Դ. եւ ԵՐԱՏՈՅ, Ք. ա. 2—1 Ք. ե.: Զարմանալի է տեսնել անոնց դրամի վրայ ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ գրութիւնը. Արտաշիսեան վերջին թագաւորները այլեւս այս տիտղոսը չէին կրեր, թէեւ Թումանոֆ[48] կը պնդէ թէ՝ Մեծն Տիգրանի յաջորդները գործածեցին այս տիտղոսը: Պէտք է սակայն նկատել որ Արտաւազդ Բ.էն յետոյ որեւէ Արտաշէսեան թագաւոր այս տիտղոսը չէ գործածած իր դրամին վրայ:

Ք. ա. 1 թուականին, Հռովմի Օգոստոս կայսրը՝ իր թոռը Գայոս Կեսարը՝ Հայաստան ղրկեց զօրաւոր բանակով մը եւ Հռովմ նորէն հաստատեց իր գերիշխանութիւնը Հայաստանի վրայ: Ըստ Քսիփիլինոսի[49] (Xiphilinus) Տիգրան Պարթեւնե-

[48] C. Toumanoff, Studies, էջ 77—78: Թումանոֆ, ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑCը կը նկատէ համազօր ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩՆի: Տես էջ 47, ծանօթ. 86:

[49] Xiphilinus, Epitome, 55, 100, 3.

րուն հետեւելով, փորձեց համաձայնութեան գալ Հռոմէացիներուն հետ. բայց իր մահուան պատճառով՝ որոշ համաձայնութիւն մը չկայացաւ: Այդ մահով վերջ գտաւ նաեւ Արտաշիսեան հարստութիւնը: Այնպէս կ՚երեւի թէ անոր մահէն քանի մը տարի յետոյ՝ փորձ մը եղած է Երատոն, իբր վերջին Արտաշէսեանը, թագուհի հռչակել Հայաստանի. բայց եթէ այս տեղի ունեցած է եւ անոր անունով դրամներ կտրուած են՝ անոնք մեզի հասած չեն:

ԱՐՏԱԽԱԶԴ Դ., Ք. ե. 4—6: Տիգրան Դ.ի մահէն վերջ, Գայոս Կեսար Ատրպատականի Արիոբարզանէսը Հայաստանի գահը բարձրացուց: Անոր մահէն ետք, գահը անցաւ Արտաւազդ որդւոյն: Թէեւ ասոր թագաւորութիւնը միայն երկու տարի տեւեց, հետաքրքրական է որ դրամներ կտրուած են այդ միջոցին: Նկատելի է որ այդ դրամները բնաւ չեն նմանիր Արտաշէսեան դրամներուն: Թէ տիպով եւ թէ ձեւով անոնք կը նմանին Հռոմէական–Սելեւկեան դրամներուն: Նոյն իսկ գրութիւնը բոլորովին կը տարբերի: ΘΕΟΥ ΚΑΙΣΑΡΟΣ ΕΥΕΡΓΕΤΟΥ եւ միւս կողմը՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ (Արքայի Մեծի Արտաւազդի — Աստուծոյ կայսերական բարերարի):

ՏԻԳՐԱՆ Ե., 6 Ք. ե.: Արտաւազդի սպաննումէն յետոյ, Օգոստոս կայսրը փոր–

ձեց Հայերը խաղաղեցնել, թագաւոր կարգելով Տիգրան Ե․ը, որ հետուէն ապրականական կապեր ունէր Արտաշէսեան տոհմին հետ։

Գոյութիւն ունի պղինձ դրամ մը ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ գրութեամբ, որ կարելի է տալ այս թագաւորին։ Դրամին երկու կողմի արուեստը՝ կը թելադրէ վերջին Տիգրան մը, եւ խորքի ձեւը այս դրամը կը դնէ Տիգրան Գ․էն վերջ։ Կարելի չէ տալ Տիգրան Դ․ի, քանի որ թագաւորն անծանօթ է։

# ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ԴՐԱՄՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ

## ԶԱՐԵՀ (Ն․ Ք․ 189էն առաջ)

ՊՂԻՆՁ․

1 Ա․ կողմը՝ Զարեհի գլուխը աջ դարձած, հայկական խոյրով, բայց առանց տաղի կամ արծիւներու։ Շուրջանակի գրութիւն՝ ΖΑΔΡΙ-ΑΔΟΥ։

Բ․ կողմը՝ վերեւը՝ ΒΑΣΙΛΕΩΣ․ վարը ΒΑΣΙΛΕΩΝ։

Երկու գրութիւններու միջեւ՝ կայծակ։

Վիեննայի Մխիթարեանց Թանգարանը․ 4․70 կրամ, (կեղծ դրամ)։

## ԱՐՏԱՇԷՍ Ա․ (189—160 Ք․ ա․)

Այս թագաւորէն դրամներ դեռ ծանօթ չեն։

## ԱՐՏԱՒԱԶԴ Ա. (160—123 Ք. ա.)

*Այս թագաւորէն դրամներ դեռ ծանօթ չեն։*

## ՏԻԳՐԱՆ Ա. (123—96 Ք. ա.)

ՊՂԻՆՁ.

2 Ա. կողմը՝ *Թագաւորին գլուխը ձախ դարձած եւ հայկական խոյրով։ Թագաւորին գլխուն աջ կողմը կան* ΑΡΚ *գրերը։*

Բ. կողմը ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ։ *Աջին* ΤΙΓΡΑΝΟΥ։ *Ծառ մը կամ ճիւղ մը երկու գրութիւններու միջեւ։ Ծառին ձախ եւ աջ կողմը գրեր. տես անգլիերէն յօդուածին գրութիւնը։*

Bibl. Nationale, 2·50 *կրամ*[50]. Seyrig՝ (RN. 1955) *այս դրամին երկու օրինակներն ալ Տիգրան Բ.ի կու տայ։*

3 Ա. կողմը՝ *Թագաւորին գլուխը ձախ դարձած, անմօրուս եւ կը կրէ հայկական խոյրը։*

Բ. կողմը՝ ΒΑCΙΛΕΩC | ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΕΛ-ΛΗΝΟC.
*Զեւս Նիկոփորոս նստած ձախ եւ ձախ ձեռքը կը հանգչի մականի վրայ։ Ձախ դաշտին մէջ* Λ *գիրը։*

---

50 *Կշիռները պատկերացուած դրամները կը ներկայացնեն։ Ընդհանրապէս պղինձներու կշիռները բաւական կը տարբերին իրարմէ։*

Bibl. Nat., 5·28 կրամ։ Seyrig (RN. 1955) այս դրամը կու տայ Տիգրան Բ·ի։

4 Ա· կողմը՝ *Թիւ 3ին պէս։*
Բ· կողմը՝ ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ || ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΕΛΛΗΝΟC·
*Արուեստը Թիւ 3ի պէս։*

Bibl. Mus., 4·27 կր·։ Seyrig (RN. 1955) այս դրամը կու տայ Տիգրան Բ·ի։

5 Ա· կողմը՝ *Թիւ 3ին պէս։*
Բ· կողմը՝ *Ձախին՝* ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ *Աջին՝* ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΕΛΛΗΝΟC·
*Յաղթանակը կանգնած դէպի ձախ, թագ մը ձախ ձեռքին մէջ(?)։ Դաշտին մէջ ձախին՝* Μ *եւ աջին՝* Λ *գրերը։*

Bibl. Nat., 5 կր·։ Seyrig (RN. 1955) այս դրամը կու տայ Տիգրան Բ·ի, իսկ Babelon (Rois de Syrie) Տիգրան Գ·ի։

6 Ա· կողմը՝ *Թիւ 3ին պէս։*
Բ· կողմը՝ *Ձախին՝* ΒΑCΙΛΕΩC | ΜΕΓΑΛΟΥ *Աջին՝* ΤΙΓΡΑΝΟΥ | ΦΙΛΕΛΛΗΝΟC·
*Աջ դարձած անձ մը՝ հայկական խոյրով, արեգօտը կը հասնի ծունկերուն։ Ձախ ձեռքով բռնած է արծիւ մը եւ աջով՝ երկար նիզակ մը եւ կամ լախտ մը։*

Bibl. Nat., 3·68 կրամ։ Seyrig RN. 1955) այս դրամը կու տայ Տիգրան Բ·ի, իսկ Babelon (Rois de Syrie) Տիգրան Գ·ին։

## ՏԻԳՐԱՆ Բ․ ՄԵԾՆ (95—56 Ք․ ա․)

### ՉՈՐԵՔԴՐԱՄՆԵՐ (Tetradrachms)․

7 Ա․ կողմը՝ *Տիգրանի գլուխն աջ դարձած, ապարօշով եւ հայկական հինգ ծայրաւոր եւ մարգարտաշար խոյրով․ ութատամեան աստղին երկու կողմը կան երկու արծիւներ, որ իրարու կը նային, բայց կռնակնին աստղին դարձուցած են։ Շրջանակը երիզակերպ հանգուցաւոր կապ մը* (fillet border)։

Բ․ կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *Ձախին՝* ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ․ *Անտիոքի Բախտը դէպի աջ նստած՝ ժայռի մը վրայ աստեւոր, գլուխը աշտարակաձեւ թագ մը․ աջ ձեռքը արմաւենիի ճիւղ մը բռնած, ոտքերուն տակ Որոնդէս գետի ոգին կը լողայ աջ։ Շրջափակուած դափնիէ պսակով մը։*

Bibl. Nat., 16·20 *կր․։ Ուրիշ օրինակ մը «Թագաւոր Թագաւորաց» տիտղոսով ծանօթ է․ (Լենինգրադ,* 14·40 *կր․)։ Երկու կշիռներն ալ անսովոր են։ Այս դրամները հաւանաբար կոխուած են Տիգրանակերտի մէջ։*

8 Ա․ կողմը՝ *Թիւ 7ի նման։*

Բ․ կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ․

*Տիպը Թիւ 7ի նման։ Զանազան դուրսգրեր կամ տառեր ժայռին վրայ եւ կամ դաշտին մէջ, բայց տարբեր Թիւ 7էն։*

Am. Num. Society, 14·92 *կր․։ Այս*

*դրամը Տիգրանի ամենահասարակ դրամն է. մօտ* 100 *օրինակներ ծանօթ են ինծի: Կշիռները տարբեր են* 14·92*էն* 15·90 *կրամ. բոլորն ալ կոխուած են Անտիոքի մէջ:*

9 Ա. կողմը՝ *թիւ 7ի նման, բայց ունենալով ութատամեան թագը եւ արծիւ մը աջ կողմը՝ կռնակն աստղին, գլուխը ետ դարձած:*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ·

*Աշտարակաձեւ եւ աստւեոր Դամասկոսի Բախտը ձախ՝ ժայռի մը վրայ եւ ոտքերուն տակը՝ լողացողի մը կիսանդրին. Բախտը բազուկը երկարած է ամբողջովին եւ ձախ ձեռքին մէջ ամաթեղջիւր: Դաշտին մէջ եւ շրջանակէն դուրս կը տեսնուին զանազան տառեր, թիւեր եւ զուգագրեր: Ամբողջը շրջափակուած է դափնիէ պսակով:*

Brit. Mus., 15·80 *կրամ.* Newell (NNM. 84) *ապացուցած է, որ ասոնք կոխուած են Դամասկոսի մէջ: Կշիռները կը համապատասխանեն Անտիոքի մէջ կոխուած Չորեքդրամեաններուն:*

ԴՐԱՄՆԵՐ·

10 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխը, նման թիւ 7ի. մարգարտաշար շրջանակ:*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ·

Թիւ 7ի տիպէն · զանազան տառեր դաշտին վրայ · Բախտի գլուխն աջ դարձած , իսկ Որոնդէս գետին ոտին տակը :

Am. Num. Soc., 4·13 կրամ : Դրամներուն, — որոնցմէ 25 հատ ծանօթ են ինծի —, արուեստն աւելի գեղեցիկ է, քան չորեքդրամներունը : Դրամները կոխուած են՝ Տիգրանակերտ :

ՊՂԻՆՁ ԴՐԱՄՆԵՐ — ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՓՈՂԵՐԱՆՈՑԷՆ ·

11 Ա · կողմը՝ Թիւ 10ի պէս , Օրինակ մը ունի A գիրը դարձուած խոյրին վրայ :

Բ · կողմը՝ Թիւ 10ի պէս , ոմանց վրայ T գիրը Բախտին եւ արմաւենիին միջեւ :

Պաուկեան՝ 6·13 կրամ : Մօտ 20 օրինակներու կշիռները բաւական տարբերութիւններ ունին : Ոմանք դէշ պահուած են , իսկ ոմանք ալ դարձուած են օտար դրամներու վրայ :

ԿԷՍ–ՊՂԻՆՁ ·

12 Ա · եւ Բ · կողմը՝ Թիւ 11 պէս :

Brit. Mus., 4·65 կրամ : Ասիկա անտարակոյս պղինձի կէս–արժէքն է · ասկէ ուրիշ օրինակ մը (Տիկ · Գափամաճեան) ունի T գիրը դաշտին մէջ :

ՊՂԻՆՁ ԴՐԱՄՆԵՐ — ԴԱՄԱՍԿՈՍԻ ՓՈՂԵՐԱՆՈՑ·

13 Ա· կողմը՝ *Թիւ 9ի նման. (Դամասկոսի չարեքդրամ), կէտով շրջանակ։*

Բ· կողմը՝ *Թիւ 9ի պէս, կէտով շրջանակուած։ Տառերու դաշտին վրայ կայ* N *գիրը, ոմանք ունին դաշտին մէջ՝ ձախ կողմը* ΟΦ*ի, վրան՝* ΘΕ *տառերը։*

Brit. Mus., 8·47 *կրամ։ Անկէ 12 օրինակ ծանօթ է ինծի։*

ԿԷՍ ՊՂԻՆՁ·

14 Ա· *եւ* Բ· կողմը *Թիւ 13ին պէս։*

Am. Num. Soc., 4·60 *կրամ*· Bibl. Nationale*ի պղինձը (3·00 կրամ) նոյնպէս կէսպղինձ է։*

ՄԷԿ–ԵՐՐՈՐԴ ՊՂԻՆՁ(?)·

15 Ա· կողմը՝ *Թիւ 13ին պէս*·

Բ· կողմը՝ *Գրութիւնը Թիւ 13ին պէս։ Յաղթանակը ձախ կը քալէ, աջ ձեռքը յառաջ երկարած եւ պսակ մը բռնած։ Դաշտին ձախ կողմը* ΘΕ *որ* ΟΦ*ի վրան է։*

*Հայաստան Պետական Թանգարան (Գալայճեանի Հաւաքածոյէն)*· 2·67 *կրամ։* Newell (NNM. 84), *այս կտորը կը նկատէ մէկ–երրորդ պղինձ։*

ՊՂԻՆՁՆԵՐ – ԱՆՈՐՈՇ ՓՈՂԵՐԱՆՈՑՆԵՐԷ :
Բ. ԿՈՂՄԸ՝ ՅԱՂԹԱՆԱԿԸ (Nike) :

16 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխն աջ դարձած, հայկական խոյրով եւ ութաստմեան աստղով : Ասոնցմէ ոմանք արծիւներու ձախ կողմն ունին A տառը : Կիտաւոր շրջանակ :*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ·

*Յաղթանակը ձախ կը քալէ, ձախ ձեռքը թաղ մը, աջը երկարած դէպի վար : Զանազան դրեր Յաղթանակին տակ եւ դաշտին մէջ :*

*Հայաստանի Պետական Թանգարան (Գալուստեանի հաւաքածոյէն), 7 կրամ :* Le Rider (RN. 1959/60) *կը կարծէ թէ այս կտորը Անտիոք կոխուած է :*

ԿԷՍ–ՊՂԻՆՁ·

17 Ա. եւ Բ. կողմը՝ *Թիւ 16ին պէս :*

Brit. Mus., 5·33 *կրամ :*

ԳԵՂԱՁԱՐԴ ԽՈՅՐ ԵՒ Բ. ԿՈՂՄԸ՝ ՅԱՂԹԱՆԱԿԸ·

ՊՂԻՆՁ·

17–1 Ա. կողմը՝ *Տիգրան գեղազարդ խոյրով եւ A գիրով, Թիւ 18ի պէս :*

Բ. կողմը՝ *Թիւ 18ի պէս :*

*Պատուկեան, 6·9 կրամ :*

ԿԷՍ ՊՂԻՆՁ․

18 Ա․ կողմը՝ *Տիգրանի գլուխն աջ դարձած, գեղազարդ խոյրով, հինգի փոխարէն չորս ծամերով։ Կենդրոնական ութաստամեան աստղին երկու կողմը մարգարտէ սիւներ(?)։ Բոլորն ալ թագաւորին գլխուն ձախ կողմը ունին* A *գիրը*։

Բ․ կողմը՝ *Թիւ 17ին պէս, բայց առանց տառերու դաշտին մէջ*։

Brit. Mus., 3·67 *կրամ։ Այս դրամին արուեստը կը ցուցնէ բոլորովին նոր փորագրանոց մը․ թերեւս կոխուած է Մեդիայի* (Media) *մէջ*։

ՎԱՀԱԳՆ (Hercules) Բ․ ԿՈՂՄԻ ՎՐԱՅ․

ՊՂԻՆՁ[51].

18–1 Ա․ կողմը՝ *Տիգրանի գլուխը աջ դարձած, աստղով եւ երկու արծիւներով*։

Բ․ կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ

*Ձախին* ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ

*Վահագնը թիւ 19ի նման*․

*Պտուկեան*, 5·7 *կրամ*։

---

[51] *Թիւ* 18–1 *եւ* 18–2 *պղինձները մաս կը կազմեն հօթը Տիգրան պղինձներու դրամագիւտի մը որ նկարագրուած է* Revue des Études Arméniennes, Tome V*ի մէջ, էջ* 421—433։

18–2 Ա. կողմը՝ *Թիւ 18–1ի նման* ։

Բ. կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ *Ձախին* ΤΙΓΡΑΝΟΥ

*Պաւլեան*, 4.9 *կրամ* ։

ԿԷՍ–ՊՂԻՆՁ.

19 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխն աջ դարձած, խոյով եւ երկու արծիւներով* ։

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ. *Մօրուսաւոր եւ մերկ Վահագնը կանգնած ձախ կը նայի* ։ *Ձախ ձեռքը կը յենու լախտի մը վրայ եւ աջ բազուկին վրայ կայ առիւծի մորթը* ։ *Ոմանց վրայ կը տեսնուին տառեր Վահագնի աջ եւ ձախ կողմը* ։

Bibl. Nat., 3.02 *կրամ* ։ *Ասոնք կոխուած են Արտաշատի մէջ, ինչպէս կը համարի* Le Rider (RN. 1959/60) ։

ԱՐՄԱՒԵՆԻ ՃԻՒՂ Բ. ԿՈՂՄԻՆ ՎՐԱՅ.

ԿԷՍ–ՊՂԻՆՁ.

20 Ա. կողմը՝ *Թիւ 19ին պէս* ։

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ. *Արմաւենիի ճիւղը գրութեանց միջեւ* ։ *Զուգագիծ մը արմաւենիին ձախ, եւ տառեր աջ կողմը* ։

Bibl. Nat., 4.15 *կրամ* ։ Babelon*ի կարծիքով՝ հաւանաբար Արտաշատի մէջ կոխուած նախաւոր դրամ մըն է* ։

## ԱՆՈՐՈՇ ԱՌԱՐԿԱՅ Բ. ԿՈՂՄԻ ՎՐԱՅ.

ՊՂԻՆՁ.

20–1 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխը աջ դարձած.*

Բ. կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ

*Ձախին* ΤΙΓΡΑΝΟΥ

*Անորոշ առարկայ (արմաւենիի ճիւղ?) մը գրութեանց միջեւ:*

*Վիեննայի Միխիթարեանց թանգարանը կշիռ* 4·30 *կրամ:*

## ՆՍՏԱԾ ԱՆՁ ՄԸ՝ ԵՐԿՐՈՐԴ ԿՈՂՄԸ.

ՊՂԻՆՁ (54).

20–2 Ա. կողմը՝ *Թիւ 21ի պէս:*

Բ. կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ

*Ձախին* ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ

*Թիւ 21ի պէս:*

*Այս դրամը ծախուեցաւ 1968ի սկիզբները Սուրիոյ մէջ: Ներկայիս ո՛ւր ըլլալը չի գիտցուիր: Կը թուի ըլլալ թիւ 21ի մեծ պղինձը:*

## ԿԷՍ–ՊՂԻՆՁ.

21 Ա. կողմը՝ *Թիւ 19ին պէս: Շրջանակը կիտաւոր:*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ, *ձախին՝* ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ. *Անձ մը նստած ձախին(?): Տառեր դաշտին մէջ եւ անձին տակը*[52]:

---

[52] *Այս դրամին մեծ պղինձը գտնուեցաւ վերջերս:*

Brit. Mus., 2·44 կրամ : Թերեւս աւելի մէկ-երրորդ պղինձ է : Գրութիւնը կը թելադրէ այս դրամը Հայաստանի փողերանոցի մէջ կոխուած համարիլ :

## ԱՐՏԱՒԱԶԴ Բ · (56—34 Ք · ա ·)

### ՉՈՐԵՔԴՐԱՄ (Tetradrachm) ·

22 Ա · կողմը՝ *Արտաւազդ գլուխը աջ դարձած, ապարօշով, ականջի օղերով եւ հայկական հինգ ծայրաւոր խոյրով եւ ութ-տասնեան աստղի երկու կողմը ծաղիկի ու-րուագիծ մը : Շրջանակը՝ հատաւոր ծիր մը :*

Բ · կողմը՝ *վերը՝* ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ, *վարը՝* ΑΡΤΑΥΑΖΔΕΩ | ΘΕΙΟΥ, *Արտաւազդ քառաձի կառքի մը վրայ դէպի ձախ ընթա-ցող, վարիչը թաղով եւ սանձը բռնած : Դաշտին մէջ ձախին տակը* ΙΗ *գուգատառը : Շրջանակը՝ դափնէ պսակ :*

*Հայաստանի Պետական Թանգարան* · 14·85 կրամ · *Այս եզակի չորեքդրամը վեր-ջերս նկարագրուեցաւ Մուշեղեանի կողմէ*[46] :

### ԴՐԱՄՆԵՐ (Drachms) ·

23 Ա · կողմը՝ *Թագաւորին կիսանդրին աջ դարձած, ապարօշով, ականջի օղերով եւ հայկական հինգ ծայրաւոր խոյրով · ութատասնեան աստղին երկու կողմը ար-ծիւներ · մարգարտաշար շրջանակ :*

Բ · կողմը՝ *Վերը՝* ΒΑCΙΛΕΩC, *վարը՝* ΒΑCΙΛΕΩΝ | ΑΡΤΑΥΑΖΔΟΥ ·

*Տիպը թիւ 22ին նման, բայց դուպագիր մը ձախին եւ տառեր վերեւը։*

*Պատուկեան*, 3·78 *կրամ*։ *Ութ օրինակներ ծանօթ են ինծի, բոլորն ալ նոյն դուպագիրն ունին, բայց կը տարբերին դաշտի մէջ գտնուող տառերով*։

ՊՂԻՆՁ·

24 Ա· կողմը՝ *թիւ 22ին պէս, բայց ականջի օղերը չեն տեսնուիր, ձախին դաշտին մէջ* A *գիրը*։

Բ· կողմը՝ *Աջին*՝ BACIΛEΩC, *ձախին*՝ BACIΛEΩN | ΑΡΤΑΥΑCΔΟΥ·

*Յաղթանակը դէպի ձախ կը քալէ, երկարած աջ ձեռքին մէջ ունի թագը*(?)։

Bibl. Nat., 9 *կրամ*։ *Ուրիշ օրինակ մը Հայաստանի Պետական Թանգարանին մէջ* (*Գալըսճեանի հաւաքածոյէն*), *որ կոխուած է Փիւնիկեան դրամի մը վրայ*։

ԱՐՏԱՇԷՍ Բ· (30—20 Ք· ա·)

ՊՂԻՆՁ՝

25 Ա· կողմը՝ *Թագաւորին գլուխն աջ դարձած, կրելով հինգ*(?) *ծայրաւոր հայկական խոյրը*։

Բ· կողմը՝ *կը տեսնուին հետքերը* BACIΛEΩΣ ΜΕΓΑΣ *գրութեան*։ *Յաղթանակը աջ դարձած, ձախ ձեռքին մէջ թագ մը*(?)։

*Պատուկեան*, 4·35 *կրամ*։ *Այս դրամը մաս կը կազմէ Տիգրան Բ·ի փոքր դրամագլխին*։

## ՏԻԳՐԱՆ Գ· (20—8/6 Ք· ա·)

### ԴՐԱՄ (Drachm)·

26 Ա· կողմը՝ *Թագաւորին գլուխն աջ դարձած, կարճ մօրուքով եւ բարձր՝ հինգ ծագաւոր խոյրով, վրան ութատամեան մեծ աստղ մը: Շրջանակը դափնէ պսակ:*

Բ· կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ, *Ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΟΠΑΤΟΡΟΣ ΚΑΙ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ· *դէպի ձախ կեցած մօրուաւոր անձ մը, պատմուճանով, կը կրէ երեք ծոպով խոյր մը: Երկարած ձեռքին մէջ բռնած է շանթը*(?), *իսկ ձախ ձեռքը կը հանգչի նիզակի կամ լախտի մը վրայ:*

Am. Num. Soc., 3·83 *կրամ* (*եղերքէն փոքր կտոր մը կը պակսի*): Newell (NNM. 30) *այս դրամը կը վերագրէ Տիգրան Գ·ի: Թէ արուեստը եւ թէ չինուածքը կը հաստատէ այս վերագրումը: Հաւանօրէն կոխուած է Արտաշատի մէջ:*

### ՊՂԻՆՁ·

27 Ա· կողմը՝ *Թագաւորին կիսադէմին աջ դարձած, ապարօշով, անմօրուս. կը կրէ հինգ ծագով խոյրը, ութատամեան խոշոր աստղ:*

Բ· կողմը՝ *Քառակուսի դրուածք, որ դէպի աջ կը կարդացուի*

*Վերը՝* ΒΑΣΙΛΕΩΣ
*Աջը՝* ΜΕΓΑΛΟΥ
*Տակը՝* ΤΙΓΡΑΝΟΥ
*Ձախէն՝* ΘΕΟΥ

*Փիղ մը դէպի ձախ, կնճիթն առկախ։*

*Պաուկեան,* 7·08 *կրամ։ Հաւանաբար կոխուած Արտաշատի մէջ։*

28 Ա· կողմը՝ *թիւ 27ին նման։*

Բ· կողմը՝ *Բառակուսի գրուածք թիւ 27ի պէս, բայց աջէն սկսելով։ Յաղթանակը դէպի ձախ կը քալէ, ձախ ձեռքին մէջ ունի թագ(?) մը, իսկ աջ բազուկը առկախ։*

*Տօնապետեան* 3 *կրամ։*

ԿԷՍ ՊՂԻՆՁ[53].

29 Ա· կողմը՝ *թիւ 27ի նման։*

Բ· կողմը՝ *Բառակուսի գրուածք թիւ 27ի պէս, բայց գրութիւնը ժամացոյցի պէս աջ չի կարդացուիր, այլ՝*

*Վերը՝* ΒΑΣΙΛΕΩΣ
*Աջին՝* ΜΕΓΑΛΟΥ
*Վարը՝* ΤΙΓΡΑΝΟΥ
*Ձախին՝* ΘΕΟΥ

*Առիւծի գլուխը դէպի աջ դարձած։*

*Տօնապետեանի հաւաքածոյ·* 1·95 *կրամ։*

---

53 *Այս տեսակին մեծ պղինձը — 4·5 կրամ — վերջերս անցաւ Պրոֆ· Տօնապետեանի ձեռքը։*

ՊՂԻՆՁ[54].

29–1 Ա. կողմը՝ *Թիւ 30ի նման* :

Բ. կողմը՝ *քառակուսի գրուածք Թիւ 22ի պէս, եւ ձի մը ձախ դարձած եւ առջեւի ոտքը վեր վերցուցած* :

*Տօնապետեան, կշիռ 4·25 կրամ* :

ԿԷՍ ՊՂԻՆՁ.

30 Ա. կողմը՝ *Թիւ 27ի նման* :

Բ. կողմը՝ *Քառակուսի գրուածք Թիւ 27ին պէս : Ձի մը ձախ դարձած եւ առջեւի մէկ ոտքը բարձրացուցած* :

Bibl. Nat., 2·85 *կրամ* : Babelon, (Rois de Syrie, *էջ* 216) *այս դրամը կը վերագրէ Տիգրան Դ.ի, սակայն այս դրամին արուեստը, պատկերը եւ քառակուսի գրութիւնը տարակոյս չեն թողուր, թէ այս դրամը կը պատկանի Տիգրան Գ.ի* :

---

[54] *Այս դրամին պատկերը հրատարակուեցաւ Տօնապետեանի կողմէ Պէյրութի Զանասէր Թերթի* (1968, *Թիւ* 1, *էջ* 10—12*ի*) *մէջ: Միւս բոլոր Տիգրան Գ.ի պատկերները եւ վերարտադրութիւնները առնուեցան Պատուկեանի մամլոյ տակ եղող յօդուածէն* (Bedoukian, A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia, Museum Notes 14, 1968 (American Numismatic Society, New York) *բայց պարագաներու բերումով Զանասէրը լոյս տեսաւ Անգլիերէն բնագրին տպագրութենէն առաջ* :

## ԱՐՏԱՒԱԶԴ Գ. (5—2 Ք. ա.)

*Այս թագաւորէն դրամ դեռ ծանօթ չէ :*

## ՏԻԳՐԱՆ Գ. (8—5 Ք. ա.)

ՊՂԻՆՁ.

31 Ա. կողմը՝ *Երկար մօրուքով թագաւորին գլուխն՝ աջ դարձած, ապարօշով եւ Հայկական խոյրով :*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ *Բախտը գահին վրայ նստած՝ դէպի ձախ. ձախ ձեռքին մէջ՝ ամաթեղջիւր, իսկ աջ ձեռքին մէջ անորոշ առարկայ մը :*

Bibl. Nat., 5·55 *կրամ*, Babelon (Rois de Syrie, *էջ* 215) *այս դրամը կու տայ Տիգրան Գ.ի :*

32 Ա. կողմը՝ *Երկար մօրուքով Տիգրանը թիւ 31ին պէս :*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ *Ձախին՝ անընթեռնելի գրուածք մը :* *Յաղթանակը դէպի աջ կանգնած : Վեր արձրացուցած աջ ձեռքով բռնած պսակ մը. ձախ ձեռքին ամաթեղջիւրը :*

*Վիեննայի Մխիթարեանց Թանգարանը*, 6·5 *կրամ :*

33 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխը դէպի աջ, թիւ 31ի նման :*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ *Ձախին՝* ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ·

*Աթենաս կանգուն, դէպի ձախ. աջին՝ ձեռքին մէջ Նիզակ մը, իսկ ձախին մէջ վահան :*

Bibl. Nat., 4·78 *կրամ* : Le Rider (RN. 1959/60) *այս դրամը կը վերագրէ Տիգրան Գ.ի :*

34. Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխը, նման թիւ 31ի :*

Բ. կողմը՝ *Աջին՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ
*Ձախին՝* ΜΕΓΑΛΟΥ

*Մօրուսաւոր Վահագն կանգուն, դէպի ձախ. ձախ ձեռքը կը յենու լախտի մը վրայ, աջ ձեռքին ունի առիւծի մորթը :*

*Պասւկեան,* 6·77 *կրամ : Այս դրամը ստացայ Պարսկաստանէն :*

ԿԷՍ–ԴՂԻՆՁ.

35. Ա. կողմը՝ *Երկար մօրուքով Տիգրանը, նման թիւ 31ին :*

Բ. կողմը՝ *վերը՝* ΒΑΣΙΛΕΩΣ,
*վարը՝* ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ.

*Փիղ մը դէպի ձախ, կնճիթը բարձրացուցած :*

*Պասւկեան,* 4·47 *կրամ : Այս դրամին առաջին կողմը շատ կը նմանի թիւ* 31 *դրամին ուստի պէտք է վերագրել նոյն թագաւորին :*

36. Ա. կողմը՝ *Երկար մօրուքով Տիգրանը, թիւ 31ին նման :*

Բ. կողմը՝ *Գրութիւնն անորոշ: Արծիւ մը աջ կանգնած:*

*Պաուկեան*, 2·45 *կրամ:*

*Հաւանաբար մէկ–երրորդ պղինձ:*

37. Ա. կողմը՝ *Անորոշ:*

Բ. կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ *կը կարդացուի, մնացեալ գրութիւնն անորոշ, բայց հաւանօրէն թիւ 33ին պէս:*

*Աթենաս կանգուն, նման թիւ 33ին:* —

*Վիեննայի Մխիթարեանց Թանգարան:*
*Այս դրամը հաւանաբար թիւ 33ի կէսպղինձն է:*

37–1 Ա. կողմը՝ *Մեծ մօրուքով Տիգրանը թիւ 31ի պէս:*

Բ. կողմը՝ *Աջին* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ

*Ձախին անընթեռնլի:*

*Յաղթանակը կանգնած թիւ 32ի պէս:*

*Պաուկեան*, 3·2 *կրամ:*

## ՏԻԳՐԱՆ Դ. ԵՒ ԵՐԱՏՈՅ
## (2 Ք. ա. — 1 Ք. Ե.)

ՊՂԻՆՁ.

38 Ա. կողմը՝ *Տիգրանի կիսանդրին դէպի աջ. հայկական խոյրով եւ ապարօշով: Գրութիւնը ժամացոյցի սլաքի ուղղութեամբ շուրջանակի* ΒΑϹΙΛΕΥϹ ΒΑϹΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΗϹ.

Բ. կողմը՝ *Երատոյ թագուհիին կիսանդրին: Գրութիւնը ժամացոյցի սլաքի հակառակ ուղղութեամբ շուրջանակի* ΕΡΑΤΩ ΒΑϹΙΛΕΩϹ ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ.

Bibl. Nat., 7 կրամ: Յիշատակուած Babelonի կողմէ (Rois de Syrie, էջ 216):

38–1 Ա. կողմը՝ Տիգրանի կեսանդրին թիւ 38ի պէս, բայց դրութիւնը շրջանակի մէջ

ΒΑCΙΛΕΥC ΜΕΓΑC ΝΕΟC ΤΙΓΡΑΝΗC

Բ. կողմը՝ Երատոյ թագուհիին կիսանդրին, դրութիւնը թիւ 38ի պէս:

ΕΡΑΤΩ ΒΑCΙΛΕΩC ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ

6.95 կրամ:

Այս դրամը կը գտնուի Glasgow Universityի (Սկովտիա), Hunterian Museumի մէջ (Տես Hunter Collection Catalog, Vol. III, p. 4: Pl. LXIII, No. 6).

## ՏԻԳՐԱՆ Դ. ԵՒ ԱՒԳՈՍՏՈՍ

ՊՂԻՆՁ.

38–2 Ա. կողմը՝ Տիգրանի կիսանդրին թիւ 38ի պէս, նոյն դրութեամբ շրջանակի մէջ:

ΒΑCΙΛΕΥC ΜΕΓΑC ΝΕΟC ΤΙΓΡΑΝΗC

Բ. կողմը՝ Աւգոստոս կայսեր գլուխը ձախի դարձած, իսկ դրութիւնը շրջանակի մէջ, բայց ժամացոյցի սլաքի հակառակ ուղղութեամբ:

ΚΑΙCΑΡ ΘΕΟC ΘΕΟΥ ΥΙΟC CΕΒΑCΤΟC

Oxford University, 15 կրամ:

Այս Եզակի պղինձը ներկայիս կը

*գանուի* Oxford University*ի* Ashmolean Museum*ի մէջ։ Այս դրամը կը պատկանէր Մոսկուայի դրամագէտ* Th. Prowe*ի* (*Տես* Trans. Moscow Num. Soc. III, 1905, *էջ* 155, Pl. IV, 21) *եւ ծախուեցաւ* 1904*ին*, *Վիեննայի* Egger*ի աճուրդին մէջ*։ Oxford University*էն Պրոֆ*. D. M. Metcalf, *որուն կը պարտիմ այս դրամին հանդուերու տեղեկութիւնը, կը գրէ թէ, այս դրամը իրենց նուէր տրուած է* Dr. S. G. Milne*ի կողմէ*, *որ գնած էր* 1934*ին* E. Rogers*էն*։ *Այնպէս կ՚երեւի թէ վերջինս* 1904*ի Վիեննայի աճուրդէն գնած էր այս դրամը*։

*Տիգրան Դ*.–*Աւգոստոսի դրամի պատմական նշանակութիւնը կարօտ է լուրջ ուսումնասիրութեան*։

ԱՐՏԱՒԱԶԴ Դ. (4—6 Ք. Ե.)

ԱՐԾԱԹ ԴՐԱՄ.

39 Ա. կողմը՝ *Աւգոստոսի գլուխը դէպի աջ. դափնեպսակով*։ *Ժամացոյցի սլաքի ուղղութեամբ շուրջանակի գրութիւն*.

ΘΕΟΥ ΚΑΙΣΑΡΟΣ ΕΥΕΡΓΕΤΟΥ.

Բ. կողմը՝ *Արտաւազդի գլուխը դէպի աջ, ապարօշով*։ *Ժամացոյցի սլաքի ուղղութեամբ շուրջանակի գրութիւն* ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑVΑΣΔΟΥ.

Brit. Mus. 3·53 *կրամ. ուրիշ օրինակ մը իմ հաւաքածոյիս մէջ*։

## ՏԻԳՐԱՆ Ե. (6 Թ. Ն.)

ՊՂԻՆՁ.

40 Ա. կողմը՝ *Տիգրանի գլուխը դէպի աջ, անմօրուս, ձախ դաշտին մէջ* A *տառը*:

Բ. կողմը՝ *վերը՝* ΒΑΣΙΛΕΩΣ | ΜΕΓΑΛΟΥ, *վարը՝* ΤΙΓΡΑΝΟΥ.

*Երկձի կառքը ձախ կ'արշաւէ: Թագաւորը խոյրով, ձախ ձեռքով սանձը բռնած, իսկ աջին մէջ ունի արմաւենի(?)*:

Bibl. Nationale, Le Rider (RN. 1959/60) *այս դրամը անորոշ թագաւորի մը կը համարի եւ կը խորհի թէ վերջին Տիգրանին չի պատկանիր*:

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Այս յօդուածին Անգլիերէն բնագիրը պատրաստուելէն յետոյ, մօտ երկու տարուան ընթացքին յայտնուեցան ինը հատ նոր Արտաշէսեան դրամներ:

Այս նոր դրամները յօդուածին շարքին մէջ տրուեցան հետեւեալ թիւերով 17–1, 18–1, 18–2, 20–1, 20–2, 29–1, 37–1, 38–1, 38–2 եւ անոնց պատկերները կը տեսնուին թիւ 6, Տախտակին մէջ:

Գ.

## ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ԴՐԱՄՆԵՐՈՒ ՈՒՍՈՒՄ-ՆԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ ԱՆՑԵԱԼԻՆ ՄԷՋ

*Արտաշէսեան դրամներու ուսումնասիրութիւնը կը տարբերի Ռուբինեան դրամներու ուսումնասիրութենէն։ Առաջինները՝ ըլլալով բոլորովին յունագիր՝ մինչ մատչելի եղած են Եւրոպայի դրամագէտներու։ Նմանապէս, Արտաշէսեան շրջանի ժամանակակից աղբիւրներն ըլլալով յունարէն եւ լատիներէն, օտարներու համար դժուար չէ եղած ուսումնասիրել թէ՛ դրամները եւ թէ՛ անոնց վրայ տեսնուած թագաւորներու պատմութիւնները։ Սակայն, Արտաշէսեան դրամներու սակաւաթիւ ըլլալը արգելք եղած է, որ այս դրամները լիովին ուսումնասիրուին եւ զատուորուին Փոքր Ասիոյ միւս թագաւորութեանց դրամներու կողքին։ Միայն Մեծն Տիգրանի դրամները մեծաթիւ են. բայց որովհետեւ անոնց մեծամասնութիւնը եղած է Անտիոքի փողերանոցէն, շատ անգամ զանոնք կը տեսնենք դասաւորուած Սելեւկեան դրամներու շարքին մէջ։ Պէտք է սակայն նկատել որ հին պատմագէտներ միշտ շեշտած են Տիգրանի Հայոց թագաւոր ըլլալը եւ դրամագէտներն ալ անոր դրամ-*

ները ներկայացուցած են իրր հայկական դրամներ։

Վստահօրէն չենք գիտեր թէ առաջին անգամ ե՞րբ Արտաշէսեան դրամներ յիշատակուած են մատենագրութեան մէջ։ Կը տեսնենք որ Ե. Սպանհէմ[1] իր 1664ին տպուած գրքին մէջ՝ կը թուէ հին դրամներու վրայ երեւցած բազմաթիւ թագաւորներու տիտղոսներ, որոնց կարգին նաեւ Տիգրանի դրամին վրայ երեւցած ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ գրութիւնը։ Սպանհէմի գրքին մէջ սակայն չկայ որեւէ դրամի մը պատկերը։ Հետաքրքրական է որ ան կը խօսի ուրիշ դրամի մը մասին, որ ըստ Գոլցիուսի[2] կը կրէր՝ ΤΙΓΡΑΝΟΥΣ ΑΥΤΟΚΡΑΤΟΡΟΣ ΕΠΙΦΑΝΟΣ ΒΑΣΙΛΕΩΣ տիտղոսը։ Գոլցիուսի դրամը յետագային յիշուած է ուրիշ դրամագէտներու կողմէ, սակայն առանց ճշդումի. եւ ներկայիս այսպիսի դրամի մը գոյութիւնը շատ կասկածելի կը թուի։ Թէեւ Տիգրանի ուրիշ դրամի մը վրայի գրուածքը սխալ կարդացուած է։

Սպանհէմ[3] 1671ին հրատարակեց ուրիշ

[1] E. Spanhem, Dissertatio de Praestantia et usu Numismatum Antiquorum, Rome (1664), pp. 115, 132, 137.

[2] E. Goltzius, Josephus Scaliger, p. CXXXIX, կարելի չեղաւ այս գիրքը գտնել եւ ստուգել Spanhemի տուած գրութիւնը։

[3] E. Spanhem, Dissertationes de Praestantia et usu Numismatum Antiquorum (Ed. Sec.) Amsterdam (1671), p. 455. London Ed. 1706, pp. 468—470; Amsterdam (1717).

դրամագիտական գիրք մը, որուն մէջ տուաւ Տիգրանի չորեքդրամի մը գծագրութիւնը (Տխ. 2, Թիւ 8)։ Այսպէսով այս դրամը եղաւ առաջին հրատարակուած Արտաշէսեան արծաթը։ Անիկա զարմանալի չէ. որովհետեւ Տիգրանի Անտիոքեան չորեքդրամը, այս Հարստութեան ամէնէն սովորական դրամն է։ Յ. Ֆոյ–Վէյան[4] 1681ին նկարագրեց ոչ միայն Տիգրանի չորեքդրամը, այլ նաեւ Հայաստանի մէջ կոխուած պղնձէ դրամ մը ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ գրութեամբ. (Տխ. 2, Թիւ 11)։

Այնպէս կ'երեւի թէ Արտաշէսեան երրորդ դրամը հրատարակուեցաւ Հայմի[5] կողմէ 1719ին։ Այս անգամ Մեծն Տիգրանի ուրիշ պղնձէ դրամն էր (Տխ. 3, Թիւ 16) հաւանաբար կոխուած Անտիոքի մէջ։ Ասկէ հազիւ տասնըմէկ տարի վերջ Լիբէ[6] տուաւ Տիգրանի ուրիշ պղնձէ դրամի մը գծագրութիւնը (Տխ. 2, Թիւ 13), որ կոխուած էր Դամասկոսի մէջ։

Այս չորս Տիգրանի դրամներու գծագրութիւնները կը տեսնենք Գեսների դրամա–

---

[4] J. Foy-Vaillant, Seleucidarum Imperium sive Historia Regum Syrie, Paris(?) (1732) (Ed. Sec.) Syria ad Fidem Numismatum Accomodata, Paris 1681, p. 400, pp. 234—235.

[5] N. F. Haym, Del Thesoro Britannico, London (1719), Vol. I, p. 103.

[6] C. S. Liebe, Gotha Numaria, Thesauri Fridericiani Numismata Antiqua, Amsterdam (1730), pp. 130—133.

գիտական կարեւոր աշխատութեան մէջ, որ տպուեցաւ 1738ին: Գեսներ[7] կը յիշատակէ նաեւ Գոլցիուսի դրամը, առանց սակայն զայն տեսած ըլլալու: Յաջորդ տարին Հոլանտացի պատմագէտը Դիլ[8] տուաւ Արտաշէսեան թագաւորներու պատմութիւնը եւ ներկայացուց երեք չորեքդրամիներու եւ երեք ծանօթ պղինձներու գծագրութիւնները:

Քանի մը տարի վերջ Վիեննայի նշանաւոր դրամագէտ մը Ֆռէօլիհ[9] տուաւ ծանօթ Արտաշէսեան դրամներու ցանկը: Իր յաջորդական գրքերուն մէջ[10], [11] ան շարունակեց յիշել Տիգրանի դրամները եւ իր վերջի գրքին մէջ տուաւ Արտաշէսեան Հարստութեան երեք էջնոց պատմութիւնը: Հետաքրքրական է նկատել որ Ֆռէօլիհ կը խօսի Մեծն Տիգրանի յաջորդներուն մասին, առանց յիշելու սակայն որեւէ մէկուն դրամը: Այս կը նշանակէ որ մինչեւ 1758, Տիգրանի

7 J. J. Gessner, Specimen Rei Numariae, Liguri (1735); Numismata Regum Syriae, Liguri (1738) p. 56, Pl. VII, No. 3, 4, 5, 6.

8 D. Deel, (S. Haverkamp), Algemeene Histori, Leiden (1739), pp. 143—147; Pl. LXVIII and LXIX.

9 E. Froelich, Annales Compendiarii Regum & Rerum Syriae, Vienna (1734), pp. 112—113, Pl. IV.

10 E. Froelich, Ad Numismata Regum Veterum, Vienna (1755), pp. 34, 96—97.

11 E. Froelich, Notitia Elementaris Numismatum Antiquarium Illorum, Vienna (1758), pp. 180—182.

6—7 դրամները միայն ծանօթ էին։ Ցաւօք՝ որեւէ նորութիւն մը չբերաւ Արտաշէսեան դրամագիտութեան։

Արտաշէսեան դրամներու թիւը ճոխացաւ 1762ին տպուած Պելլերինի[12] բազմահատոր հոյակապ գործով։ Հոն առաջին անգամ ըլլալով նկարագրուեցաւ Տիգրանի փոքր արծաթ դրամը (Տխ. 2, թիւ 10) եւ նաեւ Տիգրանի Դամասկոսի մէջ կոխած չորեքդրամը (Տխ. 2, թիւ 9)։

Ասկէ զատ առաջին անգամ ըլլալով, հրատարակուեցաւ երկրորդ Արտաշէսեան թագաւորի մը դրամը։ Պելլերին այս դրամը պարզապէս կը կոչէ Տիգրանի դրամ մը. բայց այն՝ ներկայիս տրուած է Տիգրան Երկրորդի (Տխ. 4, թիւ 30)։

Պելլերին[13] էր որ նոյնպէս առաջին անգամ ըլլալով՝ ներկայացուց Արտաշէսեան թագաւորի մը երրորդ դրամ մը, յիշատակելով Արտաւազդ Բ.ին պղինձ դրամը (Տխ. 4, թիւ 24)։

Աւելի հետաքրքրական է Պելլերինի տուած ուրիշ պղինձ դրամ մը, ուր կը տեսնուի թագաւորին կիսանդրին ձախ դարձած ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ գրութեամբ, երկրորդ կողմը՝ Յաղթանակը աջ դարձած եւ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ գրութեամբ։ Այնպէս

12 J. Pellerin, Recueil de Medailles de Rois, Vol. I, Paris (1762), pp. 114—116, Pl. XIII.

13 J. Pellerin, Recueil de Medailles de Rois, Vol. I, Paris (1762), p. 127, Pl. 15, No. 1.

կ՚երեւի թէ այս դրամը սխալ ներկայացուած է. որովհետեւ՝ թէեւ նոյն գծագրութիւնը կը տեսնենք Սեստինիի[14], [15] եւ Լանգլուայի[16] (Տխ. 2, Թիւ 11) մէջ, սակայն խնդիրը կը պարզուի երբ կը քննենք նոյն դրամին լուսանկարը Բաբելոնի[17] գրքին մէջ (Տխ. 29, Թիւ 18): Անկէ յայտնի կ՚ըլլայ որ Պեղերենի դրամը շատ մաշած ըլլալուն՝ գրութիւնը սխալ կարդացուած է, եւ իրականին այս դրամը մեր Տխ. 1, Թիւ 5 դրամն էր, որ Ա. կողմը գրութիւն չունէր:

1785ին Ռաշէ[18] սկսաւ հրատարակել իր բազմահատոր դրամագիտական հանրագիտարանը (տպուած 1791ին): Տիգրանի անուան տակ կը յիշատակուին եօթը արծաթ եւ ինը պղինձ Տիգրանեան դրամներ: Ասոնք բոլորն ալ վերը յիշատակուած դրամները եւ անոնց պարբերակները կը ներկայացնէին: Իսկ Արտաւազդի անուան տակ (տպ. 1802ին) կը յիշատակէ Արտաւազդի պղինձը եւ նաեւ Բենտինկի ցուցակին մէջ յիշատակուած

14 D. Sestini, Lettere e Dissertazioni Numismatiche, Coll. Ainslieana, Vol. V. (Sec. Ed.) Firenze (1821), Pl. I, No. 3. (Տես նաեւ ծան. 24).

15 D. Sestini, Descrizione de Molte Medaglie Antiche Esisenti di Piu Musei, Firenze (1828), Vol. I. p. 320, Pl. XXIX, No. 15.

16 V. Langlois, Numismatique de l'Arménie dans l'Antiquité, Paris (1859).

17 E. Babelon, Les Rois de Syrie, d'Arménie et de Commagene, Paris (1890).

18 M. I. C. Rasche, Lexicon, Universae Rei Numariae Veterum, Lipsiae (1785).

արծաթ Արտաւազդ մը, որ իրականութեան մէջ կը պատկանէր Ատրպատականի Արտաւազդին :

Սեստինի[19] իր 1794ին հրատարակած դրամագիտական աշխատութեան հինգերորդ հատորին մէջ պատկերը կու տայ Տիգրան-Երատոյի պղինձ դրամի մը հետեւեալ գրութեամբ ·

Ա· կողմը՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΗC ·

Բ· կողմը՝ ΕΡΑΤω ΒΑCΙΛΕωC ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ ·

Անկէ 14 տարի վերջ, 1808ին, Փինքերթըն[20] իր գրքին մէջ կը գրէ թէ Գլասքոյի համալսարանին Հընթերեան Թանգարանը ունի Տիգրան-Երատոյ եզակի պղինձէ դրամ մը : Միոննէ[21] իր դրամագիտական ընդարձակ աշխատութեան չորրորդ հատորին մէջ կը յիշատակէ այս դրամը եւ կու տայ անոր ուղիղ գրութիւնը, որ է՝

Ա· կողմը՝ ΒΑΣΙΛΕΥC ΜΕΓΑC ΝΕΟC ΤΙΓΡΑΝΗC ·

Բ· կողմը՝ ΕΡΑΤω ΒΑCΙΛΕωC ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ ·

---

[19] D. Sestini, Lettere e Dissertazioni Numismatiche della Collezione Ainslieana, Livorno (1794), Vol. V, p. 5, 18.

[20] J. Pinkerton, Essay on Medals, London (1808), p. 308.

[21] Mionnet, Description de Medailles Antiques, Paris (1809), Vol. IV, p. 456.

Այս դրամին պատկերը (Տխ. 6, Թիւ 38-1) լոյս տեսաւ շատ ուշ, 1905ին Մակդոնալդի[22] Հընթերեան Հաւաքածոյի ցուցակին մէջ: Միննէի ծանօթ էր նաեւ Սեստինիի[19], [14] յիշատակած Տիգրան-Երուանդ դրամը, որ կը գտնուէր Պարիսի Ազգային Մատենադարանի թանգարանին մէջ: Այս դրամէ գծագրութիւնը կը տեսնենք նաեւ Լանգլուայի[16] գրքին մէջ եւ պատկերը Բաբելոնի[17] հատորին մէջ:

Ինչպէս կը տեսնենք, Արտաշէսեան դրամագիտութեան չէնքն սկսած էր շինուիլ:

Յաջորդ դրամը որ հրատարակուեցաւ, Տիգրան Մեծի մէկ նոր պղնձադրամն էր, որուն երկրորդ կողմին վրայ կը տեսնուի Վահագնը, մերկ, աջ ձեռքին լախտ մը եւ ձախ թեւին վրայ առիւծի մորթը (Տխ. 3, Թիւ 19): Այս դրամին գծագրութիւնը կը տեսնենք 1814ին տպուած Կոմբի[23] գրքին մէջ, որ կը նկարագրէր Բրիտանական Թանգարանի դրամները:

Սեստինի[24] 1828ին հրատարակեց իր բազմահատոր աշխատութիւնները եւ ներկայացուց մեծ թիւով դրամներու գծագրութիւններ: Վերը յիշուած դրամներէն զատ,

---

22 G. Macdonald, Hunterian Collection, Glasgow (1905), Vol. III, Pl. LXIII, No. 6.

23 T. Combe, Veterum Popularum et Regum Numi qui in Musei Britannico, London (1814), p. 215. No. 4, Pl. XII, No. 15.

24 D. Sestini, Musei Hedervariani, Firenze (1828). Vol. II, p. 380, No. 1; Pl. XIX, No. 15.

ան առաջին անգամ ըլլալով տասը փոքր պղինձ մը (Տիւ. 1, Թիւ 6), որ ներկայիս Տիգրան Ա.ի կը տրուի: Այս դրամին գծագրութիւնը կը տեսնուի նաեւ Լանգլուայի[16] մէջ (Տիւ. 3, Թիւ 4) եւ պատկերը Բաբելոնի[17] մէջ (Տիւ. 29, Թիւ 19):

Արտաւազդ Բ.ի արծաթ դրամը (Տիւ. 4, Թիւ 23) առաջին անգամ ըլլալով հրատարակուեցաւ 1847ին Բարթոլոմէի[25] կողմէ, Պետերսբուրգի դրամագիտական հանդէսին մէջ:

Վերջապէս, 1859ին, Լանգլուա[16] հրատարակեց հին հայկական դրամագիտութեան նուիրուած իր գիրքը: Այս գրքին մէջ ան յիշատակեց Արտաշէսեան երկու չորեքդրամներ, մէկ արծաթ դրամ մը (drachm) եւ 13 պղինձներ: Ասոնց մէջէն առաջին անգամն էր որ հրատարակուեցան Տիգրան Մեծի չորեքդրամը ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ խորագրով (Տիւ. 1, Թիւ 7) եւ անոր կէսպղինձը (Տիւ. 3, Թիւ 14): Այս երկուքին պատկերներն ալ կը տեսնուին Բաբելոնի[17] գրքին մէջ (Տիւ. 29, Թիւ 14 եւ 15) եւ դրամները կը գտնուին Պարիզի Ազգային Մատենադարանի թանգարանին մէջ:

1872ին Անգլիացի ծանօթ դրամագէտ

---

[25] J. Bartholomai, Mémoire de la Société d'Archéologie et de Numismatique de St. Petersbourg, Vol. III, (1849), pp. 179—181, (Zeitschrift für Münz-, Siegel- und Wappenkunde, III, 1849).

Գարդնէր[26] գրեց Արտաւազդ–Աւգոստոսի (Տխ. 5, Թիւ 39) եզակի արծաթ դրամի մը մասին, որ կը պահուէր Լոնտոնի Բրիտանական Թանգարանի մէջ: Նոյն դրամագէտը երբ 1878ին հրատարակեց Seleucid Kings of Syria, (Catalogue of Greek Coins) գիրքը, անոր մէջ 18 Տիգրանեան դրամներու շարքին յիշատակած է նաեւ երկու նոր դրամներ: Ասոնցմէ մէկը[27] կէս–պղինձ մը (Տխ. 3, Թիւ 18), որ ունէր A գիրը Տիգրանի գլխուն ձախ կողմը եւ միւսը՝ ուրիշ նոր տեսակ կէս–պղինձ մը[27] (Տխ. 3, Թիւ 17):

Տաս չանցած, 1890ին, Փրանսացի նշանաւոր դրամագէտ Բաբըլոն հրատարակեց իր շատ գնահատուած Les Rois de Syrie, d'Arménie et de Commagène գիրքը[17]: Այս հատորին մէջ վեց էջ տրամադրուած է Արտաշէսեան Հարստութեան պատմութեան եւ չորս էջ ալ դրամներուն: Հոն նկարագրուած են 30 հատ Արտաշէսեան դրամներ, որոնցմէ 17 հատը Մեծի Տիգրանի չորեքդրամներն են եւ 7 հատն ալ անոր պղինձները: Այս վերջիններուն մէջ էր՝ առաջին անգամ ըլլալով հրատարակուած՝ Տիգրանի նոր կէս–պղինձ մը (Տխ. 3, Թիւ 20), երկրորդ կողմը ունե–

---

26 P. Gardner, Numismatic Chronicle, New Series, vol. III, On an Unpublished Coin of Artavasdes II, King of Armenia, London (1872), pp. 9—15, Pl. I.

27 P. Gardner, Seleucid Kings of Syria, (Catalogue of Greek Coins), London (1878), p. 104, No. 11, 12, Pl. XXVII, No. 9.

նալով արմաւենիի տերեւ մը[28]: Նոյն գրքին մէջ Բաբելոն[29] տուաւ ուրիշ աւելի հետաքրքրական պղինձ մը (Տխ. 4, Թիւ 31), որուն Ա. կողմը կը տեսնուի մօրուսաւոր Տիգրան մը: Այս դրամը տուաւ Տիգրան Գ.ի, մինչ ներկայիս ան տրուած է Տիգրան Դ.ի:

Տիգրան Դ.—Աւգոստոս կայսեր պղինձ մը տեսնուեցաւ 1904ին հրատարակուած Պրովէի հաւաքածոյին աճուրդին մէջ[30]: Նոյն դրամը, ուրիշ Արտաշէսեան դրամներու հետ հրատարակուեցաւ 1905ին Մոսկուայի դրամագիտական հանդէսի[31] մէջ: Այս դրամը ներկայիս կը գտնուի Oxford Universityի Ashmolean Museumի մէջ[32] (Տխ. 6, Թիւ 38–2):

Արդէն, իր 1912—1914 գրած շարք մը յօդուածներուն մէջ կը նկարագրէ Զարեհի մը չորեքդրամը[33] (Տխ. 1, Թիւ 1), որ կը

28 E. Babelon, ibid., P. 214, No. 21; Pl. XXIX, No. 13.

29 E. Babelon, ibid. p. 215, No. 26; Pl. XXIX, No. 17.

30 B. Egger, Auction sale of Prowe Collection, Vienna (1904), p. 86, No. 1522.

31 Th. Prowe, Trans. of the Moscow Num. Soc. III, Moscow (1905), Monnaies Inédite ou Rares de ma Collection, pp. 151—155.

32 Նոյն թանգարանէն D. M. Metcalfe նամակով մը (17 Հոկտ. 68) կը հաղորդէ ինծի. "It comes from the collection of Dr. J. G. Milne, who bought it in 1934 from E. Rogers".

33 Արդեա, Ազգագրական Հանդէս, Թիֆլիս (1913) էջ 33:

գտնուի եղեր Բերլինի թանգարանին մէջ: Սակայն վերջերս ինծի ղրկուած Բերլինի Արտաշէսեան դրամներու ցանկին մէջ այս դրամը չէ յիշատակուած: Նոյն տեսակ կեղծ դրամ մը կը գտնուի Վիեննայի Մխիթարեան թանգարանին մէջ:

Տիգրան Մեծի արծաթներէն զատ, միւս թագաւորներու արծաթներէն շատ քիչ կան. Հետեւաբար Նիւէլլի[34], 1926ի հրատարակած Տիգրան Գ.ի եզակի արծաթը (Տխ. 4, Թիւ 26) իսկապէս հետաքրքրական է: Այսպէս, արծաթ ունեցող թագաւորներու թիւը բարձրացաւ չորսի եւ տարակոյս չկայ թէ միւս թագաւորներն ալ հաւանաբար արծաթ դրամներ կոխած են եւ անոնք անտարակոյս երեւան պիտի ելլեն ժամանակի ընթացքին:

Նիւէլ 1939ին գրեց ուրիշ դրամի մը մասին[35] որ կը կարծուի թէ մէկերորդ պղինձ մըն է (Տխ. 3, Թիւ 15): Տիգրանի այս փոքր պղինձը կը պատկանէր Նիւ Եորքաբնակ Դր. Գեղամ Գալուստեանին եւ նուիրուեցաւ Հայաստանի Պատմական Թանգա-

[34] E. T. Newell, Some Unpublished Coins of Eastern Dynasts, Numismatic Notes and Monographs, No. 30, American Numismatic Sociatey N .Y. (1926), pp. 13—15, Pl. II, No. 10.

[35] E. T. Newell, The Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus, Numismatic Notes and Monographs No. 84, American Numismatic Society, New York, (1939), pp. 97—98.

բանին, ուրիշ կարեւոր հայկական դրամ-ներու հետ[36]:

Մեր Արտաշէսեան դրամներու վրայ նորութիւններ աւելցան 1955ին, երբ Սայրիկ[37] հրատարակեց Մծբինի մէջ գտնուած խոշոր դրամագիւտի մը ուսումնասիրու-թիւնը: Այս դրամագիւտը, որ կը բաղկա-նար 624 պղինձ դրամներէ, կը պարունակէր 11 հատ Տիգրանի պղինձներ, բոլորն ալ ներ-կայիս տրուած Տիգրան Ա.ի: Այս պղինձ-ներէն երեք տեսակները անտիպ կտորներ էին: Մէկը[38] (Տխ. 1, Թիւ 21) երկրորդ կողմը ունի ծառ մը եւ միւս երկուքը (Տխ. 1, Թիւ 3 եւ 4) Զեւս չաստուածը տարբեր դրու-թիւններով[39]:

Ուրիշ Ֆրանսացի դրամագէտ մը, Լը Ռիդէր 1959ին հրատարակեց Պարիսի Ազ-գային Մատենադարանի ստացած նոր դրամ-ներու ցանկը[40]: Ասոնց շարքին կային քանի մը Արտաշէսեան դրամներ, որոնցմէ երեք հատը անտիպ էին: Առաջին անգամն ըլլալով

---

[36] Զ. Պաուկեան, Գեղամ Գալուճեանի արժէքա-ւոր նուէրը Հայաստանի Պատմական Թանգարանին· Հայաստանի Կոչնակ, Թիւ 60, Մայիս 21, 1960, էջ 495—496:

[37] H. Seyrig, Tresore Monetaire de Nisibe, Revue Numismatique, Paris (1955).

[38] H. Seyrig, ibid. p. 87; Pl. I, No. 1.

[39] H. Seyrig, ibid. p. 87, Pl. I, No. 2 and p. 87.

[40] G. Le Rider, Monnaies Grecques Acquises par le Cabinet des Medailles en 1959. Revue Numismatique, 1959—1960, pp. 7—35.

Հրատարակուեցաւ Տիգրան Գ.ի պղինձէ դրամը[41] որուն երկրորդ կողմին վրայ կը տեսնենք փիղ մը (Տխ. 4, Թիւ 27)· ուրիշի մը[42] վրայ կը տեսնուի Աթենասը, այս դրամը կը վերագրուի Տիգրան Գ.ի եւ երրորդ պղինձ մը[43], որ կը տրուի Տիգրան Ե.ին (Տխ. 5, Թիւ 40)։

Ինչպէս կը տեսնուի, անցեալին մէջ Արտաշէսեան Հարստութեան բոլոր կարեւոր դրամագիտական աշխատանքները՝ կատարուած են օտարներու կողմէ։ Ասիկայ հասկնալի է, որովհետեւ քաղաքական պատճառներով անկարելի եղած է ազգայիններուն՝ լրջօրէն ուսումնասիրել այդ դրամները։ Արտաշէսեան դրամները կը գտնուէին օտար մեծ թանգարաններու մէջ, եւ անոնց ուսումնասիրութիւնը՝ ընդհանրապէս առանձնաշնորհուած է հոն աշխատող դրամագէտ պաշտօնեաներուն։

Վերջերս կացութիւնը փոխուած է եւ առաջին անգամն ըլլալով՝ Հայաստանի մէջ գտնուած հայ թագաւորի մը՝ նոր դրամին մասին գրուեցաւ Հայաստանի պարբերաթերթի մը մէջ, եւ գրողն եղաւ Հայաստանի Պատմական Թանգարանի մէջ աշխատող դրամագէտ մը։

41 G. Le Rider, ibid. p. 25, No. 32; Pl. III, No. 32.

42 G. Le Rider, ibid. p. 28, No. 35; Pl. III, No. 35.

43 G. Le Rider, ibid. p. 29, No. 36; Pl. III, No. 36.

Այսպէս, 1964ին Մուշեղեան[44] (Տխ. 3, Թիւ 22), հրատարակեց յօդուած մը նուիրուած Արտաւազդ Բ.ի եզակի չորեքդրամին: Այս դրամով յայտնի եղաւ որ չորեքդրամներ կոխուած են Հայաստանի մէջ եւ կը հաստատուի այն կարծիքը՝ թէ Մեծն Տիգրանի ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ չորեքդրամը՝ նախապէս կոխուած է բուն Հայաստանի մէջ եւ կը տարբերի Անտիոքի մէջ կոխուած չորեքդրամներէն:

Եւ վերջապէս՝ վերջին քսան տարուան ընթացքին լրջօրէն զբաղած եմ ես ալ հայկական դրամներով: Այս ժամանակամիջոցին կարելի եղած է քննել Նիւ Եորքի, Լոնդոնի, Պարիսի, զոյգ Մխիթարեաններու, Լենինգրադի — Էրմիտաժ եւ Ասիական —, Բերլինի թանգարաններու եւ նաեւ բազմաթիւ անհատական հաւաքածոներու դրամները: Անկէ զատ վերջին քանի մը տարիներու ընթացքին բախտաւորութիւնը ունեցած եմ ձեռք ձգելու բաւական թիւով նոր Արտաշէսեան դրամներ: Այս տարիներու ուսումնասիրութեանց արդիւնքը հրատարակուեցաւ Ամերիկեան Դրամագիտական Ընկերութեան Տարեգրքին մէջ[45], եւ հայերէն թարգ-

[44] Խ. Մուշեղեան, Արտաւազդ Բ.ի Չորեքդրամը, Պատմա-բանասիրական Հանդէս, Երեւան (1964), Թիւ 2, էջ 317—323:

[45] P. Bedoukian, A Classification of the Coins of the Artaxiad dynasty of Armenia, American Numismatic Society, Museum Notes 14 (1968) New York, pp. 41—66, Pl. IX, X. XI.

մանութիւնը «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ[46]:
Այս երկար յօդուածին մէջ ամփոփուած են աշխարհի չորս կողմը ցրուած Արտաշէսեան դրամները ու ներկայացուած նոր դասաւորութեամբ: Այս յօդուածին մէջ, ութը տեսակ նոր կամ անտիպ դրամներ յիշատակուած են, որով Արտաշէսեան դրամներու տեսակները կը հասնին քառասունի: Առաջին անգամն ըլլալով այսքան տեսակներ իրարու քով բերելով, կարելի եղաւ դասաւորութեան նոր փորձ մը ընել:

Յիշուած ութը նոր դրամներուն մէջն էին՝ հինգ հատ Տիգրան Դ.ի պղինձներ (Տխ. 5, Թիւ 32, 34, 35, 36, 37) առաջինը եւ վերջինը գտնուելով Վիեննայի Մխիթարեաններուն թանգարանին մէջ եւ միւսները՝ իմ հաւաքածոյիս մէջ: Ուշագրութեան արժանի է, որ վերջին երկուքը (Տխ. 5, Թիւ 36 եւ 37) կը ներկայացնեն այս թագաւորին նոր տեսակ կէս–պղինձները:

Տխ. 4, Թիւ 25 դրամը՝ գտնուած վեց հատ Տիգրան Բ.ի պղինձներուն հետ՝ բոլորովին նոր տեսակ դրամ մըն է եւ յայտնի է որ կը պատկանի Արտաշէսեան թագաւորի մը: Դժբախտաբար դրամին մաշած ըլլալուն պատճառով, անկարելի եղաւ կարդալ

46 Զ. Պտուկեան, Հայաստանի Արտաշէսեան Հարստութեան թագաւորներու դրամներու դասաւորումը. Հանդէս Ամսօրեայ ՁԲ. տարի, Թիւ 7—9, էջ 319—354:

Թագաւորին անունը։ Սակայն, նկատի ունենալով դրամագիտին պարագաները, այս դրամը տրուեցաւ Արտաշէսին, Մեծն Տիգրանի թոռին։

Այս գրութեան մէջ առաջին անգամ ըլլալով հրատարակեցի նաեւ Մեծն Տիգրանի երկու նոր կէս–դրախմները (Տխ. 2, Թիւ 12 եւ Տխ. 3, Թիւ 21)․ ինչպէս նաեւ Տիգրան Գ.ի դրախմը (Տխ. 4, Թիւ 28 եւ կէս–դրախմը Տխ. 4, Թիւ 29)։

Նոյն տարին, Տօնապետեան[47] հրատարակեց Տիգրան Գ.ի դրամներու նուիրուած յօդուած մը, ուր առաջին անգամ ըլլալով տեսնուեցաւ կէս–դրախմ, Տխ. 4, Թիւ 30ին մեծ տեսակը (Տխ. 6, Թիւ 29–1)։

Իմ անգլիերէն յօդուածս[45] խմբագրութեան յանձնուեցաւ 1967ին։ Անկէ ասդին քանի մը ուրիշ տեսակ նոր դրամներ մէջտեղ ելան եւ կամ գտնուեցան մատենագրութեան մէջ։ Այսպէս, հոս կը ներկայացուին ինը դրամներ, որոնցմէ եօթը նոր եւ անտիպ են իսկ միւս երկուքը չեն յիշուած անգլիերէն յօդուածին մէջ։ (Տես Տխ. 7)։

Տիգրանակերտի մօտ գտնուած Տիգրանի դրամագիտին մէջ[48] կային կէս–դրախմի

---

[47] Ա. Յ. Տօնապետեան, Ջանասէր, Պէյրութ, 1968, Թիւ 1, էջ 12, Թիւ 4։

[48] Թիւ 18–1 եւ 18–2 դրախմները մաս կը կազմեն եօթը Տիգրան դրախմներու դրամագիտի մը, որ

Տխ. 3, Թիւ 19ին երկու մեծ տեսակները (Տխ. 6, Թիւ 18–1 եւ 18–2) իրարմէ տարբեր գրութեամբ:

Սուրիոյ մէջ վերջերս ծախուեցաւ Տիգրանի պղինձ մը (Տխ. 6, Թիւ 20–1), որ կը թուի ըլլալ Տխ. 3, Թիւ 21ի կէս–պղինձին մէկ տեսակը: Այս դրամին ներկայիս ուր ըլլալը չի գիտցուիր:

Վերջերս ձեռքս անցաւ նաեւ փոքր պղինձ մը (Տխ. 6, Թիւ 32–1), որ կը նմանի Տխ. 5, Թիւ 32ին եւ շատ հաւանաբար անոր կէս եւ կամ մէկ–երրորդ պղինձն է:

Անցեալ տարի Վիեննայի Մխիթարեան վանքին ստացաւ Տիգրանի նոր պղինձ մը, որուն երկրորդ կողմը կը ներկայացնէ նոր պատկեր մը (Տխ. 6, Թիւ 16–1)· բայց դրամին վիճակը կարելի չըներ որոշել թէ ի՞նչ է գրութեանց երկու գիծերու միջեւ գտնուող առարկան:

Կը սպասուի որ շատ չանցած գտնուին ոչ միայն նոր տեսակներ, այլ մանաւանդ դրամներ այն թագաւորներէն, որոնցմէ ներկայիս որեւէ դրամ ծանօթ չէ: Այսպէս, չունինք դրամներ Արտաշէս Ա.էն եւ Արտաւազդ Ա.էն, եւ միայն մէկ տարակուսական պղինձ մը Արտաշէս Բ.էն: Կը սպասենք նաեւ որ արծաթէ դրամներ (drachm) ու նաեւ

---

նկարագրուած է Revue des Etudes Arménienneի Tome Vի մէջ (1968) էջ 421—433:

չորեքդրամներ գտնուին բոլոր Արտաշէսեան թագաւորներէն։

Հոս կ՚արժէ յիշել թէ Խորենացի[49] կը գրէ՝ Արտաշէս «դրամ առանձին գիր պատկերն հարկանէր»։ Նոյնպէս Ասողիկ[50] կը հաստատէ թէ Արտաշէս իր անունով եւ պատկերով դրամ կոխեց։

Յուսանք որ ժամանակի ընթացքին նորանոր դրամներ մէջտեղ պիտի ելլեն եւ կարելի պիտի ըլլայ Արտաշէսեան Հարստութեան դրամագիտական շէնքը վերջացնել։

---

50 Ասողիկ, Արշակունեաց թագաւորներ. Ա. Մաս, Գլուխ 5։

49 Մովսէս Խորենացիի Պատմութիւն. Հար. Բ., Գլուխ ԺԱ.։

Դ.

## ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆԻ ԿԵՂԾ ՈՍԿԵ-ԴՐԱՄՆԵՐԸ*

*Հայաստանի Արտաշէսեան — 190 Ք. ա. — 6 Ք. ե. — Հարստութեան դրամները ենթարկուած են միայն հարեւանցի ուսումնասիրութեանց*[1]*: Որովհետեւ նիւթը քիչ էր եւ պատմական դէպքերը անորոշ, անկարելի եղած է նիւթը դասաւորել ճշդիւ, եւ այս պատճառով ալ այդ շրջանի դրամներն ընդհանրապէս անտեսուած են:*

---

* Թարգմանութիւն իմ՝ American Numismatic Society, Museums Notesի, XI., New York, 1964, pp. 303—306, Pl. XLIX, մէջ հրատարակած յօդուածիս:

1 V. Langlois, *Numismatique de l'Arménie de l'Antiquité* (Paris, 1859); E. Babelon, *Les Rois de Syrie, d'Arménie et de Commagene* (Paris, 1890); G. Macdonald, "*The Coinage of Tigranes I*", *NC*, 4th Ser., Vol. II (1902), pp. 193 to 202; E. T. Newell, *Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus*, NNM 84 (1939), and *Some Unpublished Coins of Eastern Dynasts*, NNM 30 (1926); H. Seyrig, «Trésor Monétaire de Nisibe», *RN* (1955), pp. 85—128; G. Le Rider, «Monnaies grecques acquises par le Cabinet des Médailles en 1959», *RN* (1959—60), pp. 7—35.

Գոյութիւն ունեցող Արտաշէսեան թագաւորներու դրամներու մեծամասնութիւնը կը պատկանի Մեծն Տիգրանի, որ կայսրութիւն մը հիմնեց՝ նուաճելով Ծոփքը, Սուրիան, Կապադովկիան եւ շրջակայ երկիրները: Այս դրամներուն մեծամասնութիւնը կոխուած են Անտիոքի մէջ, որ հայկական իշխանութեան տակ էր Ք. ա. 83—69 թուականներուն:

Երբեմն[2] Տիգրանի Անտիոքի մէջ կոխած դրամները Սելեւկեան դրամներու մաս նկատուած են. բայց այս կարծիքը անընդունելի է. որովհետեւ դրամներուն Ա. կողմը կը ներկայացնէ նոր տիպ մը, բոլորովին տարբերելով Սելեւկեան դրամներէն եւ նմանելով Արտաշէսեան թագաւորներու միւս դրամներուն:

Տիգրան Բ.ի Անտիոքի մէջ կոխած չորեքդրամը ամէնէն գեղեցիկ եւ ժողովրդական դրամն է եւ հաւանաբար այս պատճառով նոյն շրջանի բոլոր ծանօթ ոսկի դրամները կը պատկանին այս թագաւորին: Որովհետեւ Մեծն Տիգրան Հայաստանի ամենափառապանծ թագաւորներէն մէկն էր, հասկնալի է որ անոր դրամն է որ կը տեսնենք ոսկիներուն մէջ:

Հետաքրքրական է որ այս կեղծ դրամները կը ներկայացնեն քանի մը տեսակներ, թէ թափծու եւ թէ կոխուած կնիքով: Այս

---

[2] Percy Gardner BMC., The Scleucid Kings of Syria, London, 1878, pp. 103—105.

փաստը կը հաստատէ թէ անոնք պատրաստուած են տարբեր ժամանակներու մէջ եւ տարբեր անձերու կողմէ :

Հետեւեալ մեր տեսակներու նկարագրութիւնը կու տանք հոս :**

1. Առիկա թերեւս ամենահին կտորն է, որ կը պահուի Էջմիածնի Թանգարանին մէջ:

Ա. կողմը Տիգրանի կիսանդրին աջ դարձած, ունենալով հայկական ծոպաւոր խոյրը, զարդարուած ութաստղեան աստղով, որուն երկու կողմը կը տեսնուին երկու արծիւներ, որոնք իրարու կը նային, բայց կռնակնին աստղին դարձուցած են: Խոյրը մարգարտաշար է եւ ապարօշով, որ վար կը կախուի: Ճակատէն կը սկսի երկրորդ երիզ մը եւ կը միանայ միւս երիզին՝ աստղին տակ: Աչքին ձախ կողմը կը տեսնուի թադուռի մազէն մաս մը եւ նաեւ օղը :

Բ. կողմը ΒΑΣΙΛΕΩΣ աջ կողմը եւ դէպի վար :
ΤΙΓΡΑΝΟΥ ձախին եւ դէպի վար :

Անտիոքի Բախտը նստեւոր եւ աշտարակաւոր թագով մը, նստած աջ ժայռի մը

** Իմ մասնաւոր շնորհակալութիւններս կը յայտնեմ Ն. Ս. Կաթողիկոս Վազգէն Ա.ի, որ թոյլատրեց որ Էջմիածնի Թանգարանին ոսկեդրամին դաճը հանեմ: Նաեւ Երեւանի Պատմական Թանգարանին Դրամագիտական բաժնին Վարիչ, Պր. Խ. Մուշեղեանին, որ այս դաճին պատկերը պատրաստեց եւ ինծի ղրկեց: Շնորհակալութիւններս նաեւ Բրիտանական Թանգարանին Տնօրէնին K. Jenkinsի, որ իրենց ունեցած դաճերուն օրինակները տրամադրեց այս յօդուածիս համար:

վրայ։ Աջ ձեռքին բռնած սափոր մը՝ փոխանակ արմաւենի մը։ Ոտքերուն տակ Որոնդէս գետի ողին կը լողայ, աջ եւ ձախ ձեռքով բռնելով կամ շօշափելով շրջանակի դափնէպսակը։

Կշիռ 4·80 կրամ։

Ատրպետ[3] որ այս դրամը կեղծ չի նկատեր, կու տայ հետեւեալ պատմութիւնը այս դրամի մասին։ Ան կը գրէ. Այս դրամը կը պատկանէր Պարսկաստանի Շահ Մուզաֆար-էտ-Տինի (1896—1906), որ այս դրամը գործածած է իբր ժամացոյցի շղթայի զարդ։ Անոր մահէն վերջ այս դրամը անցաւ որդւոյն՝ Մուհամմէտ Ալիի ձեռքը, որ իր կարգին զայն նուէր տուաւ Վանի փոխ-հիւպատոս Օլֆէրիէվ Սէրգէյ Պետրովիչի։ 1910ին Պր. Երուանդ Լալայեան յաջողեցաւ այս դրամը գնել եւ շատ չանցած նուէր տուաւ Կաթողիկոս Մատթէոս Բ.ին։ Նորին Սրբազնութիւնը այս դրամը զետեղեց թանգարանին մէջ, ուր կը մնայ մինչեւ այսօր։ Ատրպետի կարծիքը թէ այս ոսկին կը տարբերի չորեքդրամեաններէն՝ քանի որ Անտիոքի Բախտը սափոր բռնած է՝ սխալ է, որովհետեւ ճիշդ այս տեսակ չորեքդրամ մը կը գտնուի Վենետիկի Ս. Ղազար Մխիթարեան թանգարանին մէջ։ Այս վերջի չորեքդրամին խոյրին

[3] Ատրպետ, Ազգագրական Հանդէս, Թիֆլիս, 1912 էջ 199—231։ 1913 էջ 27—56 200—223։ 1914 էջ 57—67, 83—89։

վրայ կը տեսնուի վեցատամեան տառ մը, ականջին ձախակողմը: Ոսկեդրամը մաշած ըլլալով, տառը չի տեսնուիր: Ոսկեդրամի վարի մասին վրայ կը տեսնուի զարդի մաս մը, որ մասամբ ջնջած է դրամին պատկերը: Կը տեսնուի նաեւ թէ այս ոսկին թափծու չէ, այլ կնիքով կոխուած բարակ կլորակի մը վրայ: Ասոր համար կը կշռէ միայն 4.80 կրամ, փոխանակ ըլլալու կրկինը՝ 15 կր. կշռող հաստ չորեքդրամեաններուն:

Թիւ 2 եւ 3. Երկուքն ալ դարնուած են նոյն կնիքով, թէեւ Բրիտանական Թանգարանինը կոխուած է շատ աւելի խոշոր կլորակի վրայ: Արուեստը չափազանց գեղեցիկ է:

Ա. կողմը թիւ 1ի նման:

Բ. կողմը կը նմանի թիւ 1ի, բայց Անտիոքի Բախտը ունի եռանկիւն թաղ մը եւ աջ ձեռքով բռնած է արմաւենիի ճիւղ մը: Կայ մենագիր մը: Որոնդէս գետի չաստուածը նոյնպէս բռնած է ճիւղ մը ձախ ձեռքով: Կայ նաեւ ճիւղ մը ΤΙΓΡΑΝΟΥի ձախ կողմը: Շրջափակի հետքը չկայ:

Բրիտանական Թանգարանը դրամին դաճը ստացած է Ցիւրիխի դրամավաճառ Նուսպաումէն 1938ին: Իմ ունեցածս գնած եմ 1950ի թուականներուն պէյրութաբնակ Պր. Արմենակ Բոյաճեանէն:

Թիւ 4. Այս դրամին դաճը նորէն ստացուած է Բրիտանական Թանգարանէն եւ ստ–

նուած է դրամէ մը, որ կը պատկանէր Աթէնքի դրամահաւաք Պր. Եմպեդոկլէսի։ Արուեստը շատ կոշտ է եւ բնաւ չի նմանիր Տիգրանի հարազատ դրամներուն։

Ա. Կողմը. Տիգրանի գլուխը ներկայացուած կոշտ ոճով։ Թագը կը տարբերի հայկական խոյրէն։ Կիտաւոր շրջանակ։

Բ. Կողմը ΒΑΣΙΛΕΩΣ աջ կողմը դէպի վար։ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ ձախ կողմը դէպի վար։ Ինչպէս սովորական է, Անտիոքի Բախտը նստած ժայռի մը վրայ եւ աջ դարձած։ Աջ ձեռքին մէջ ունի արմաւենիի ճիւղ մը, իսկ ոտքին տակը դէպի աջ կը լողայ Որոնդէսի չաստուածը։ Կշիռ 4.73 կրամ։

Թիւ 5. American Numismatic Societyի հաւաքածոյին մէջ։ Գնուած 1946ին։

Ա. կողմը, Թագաւորին գլուխը, խոյրով։

Բ. կողմը, սովորական Թիւ 1ի դրութիւնը։

Այս դրամը դարնուած է կնիքով։ Թագաւորին դիմագիծը բնաւ Տիգրանի դիմագծին չի նմանիր։ Բ. կողմը Բախտը ներկայացուած է շատ կոշտ ձեւով։ Կշիռ 7.25 կրամ։

Թիւ 6. Այս դրամը կը պատկանէր Կալիֆորնիայի ողբացեալ Դոկտ. Խանդամուրի, որուն թոյլտուութեամբ գաճը պատրաստեցի քանի մը տարի առաջ։ Այնպէս կ'երեւար թէ այս դրամը կամ ոսկեջրուած եւ կամ ոսկի թերթով պատուած չորեքդրամ մըն էր։ Ներկայիս ուր ըլլալը չի գիտցուիր։

Ա. կողմը, *Տիգրանի գլուխը, խոյրով շուրջ դարձած :*

Բ. կողմը, *սովորական թիւ 1ի գրու-թիւնը : Կշիռ համաձայն 15 կրամէն աւելի :*

*Այս վեց դրամներէն զատ, մասնաւ-որութեան մէջ յիշատակուած են երկու ու-րիշ Տիգրանի ոսկեդրամներ : Առաջներ կը գրէ թէ ոսկեդրամ մը կայ Վատիկանի թան-գարանին մէջ, ինք չէ կրցած տեսնել թան-գարանի տնօրէնին բացակայութեան պատ-ճառաւ : Այս խնդիրին հետապնդելով, ստացայ նամակ մը Վատիկանի թանգարանին* Dir. L. M. Tocci*էն, որ կը հաստատէր թէ Տիգ-րանի ոսկեդրամ մը գոյութիւն չէ ունեցած Վատիկանի թանգարանին մէջ :*

*Ուրիշ ոսկեդրամ մը յիշատակուած է Քիւրտեանի*[4] *կողմէ, բայց այս դրամին ինչ ըլլալը եւ ո՛ւր գտնուիլը չի գիտցուիր :*

*Վէնետիկի Մխիթարեանները վերջերս ստացան կեղծ ոսկեդրամ մը կոխուած թիւ 2 եւ 3ի կնիքով :*

*Զարմանալի չէ որ Տիգրանի բոլոր ծա-նօթ ոսկեդրամները կեղծ եղած են : Որքան որ գիտենք Արտաշէսեան հարստութեան թագաւորները, որեւէ՛ ատեն ոսկեդրամ չեն կոխած :*

---

[4] *Հ. Քիւրտեան, Հայաստանի Կոչնակ, Նիւ Եորք, 1946, թիւ 5, Փետր. 2, էջ 113 :*

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Վերջերս Պարիսաբնակ Պր. Ա. Աչճեանին հաւաքածոյին մէջ տեսայ կեղծ ոսկեդրամ մը, առնուած Տիգրանի փոքր արծաթի* (drachm) *վրայէն։ Ասիկա լաւ չինուած թափծու էր։*

*Թիւ* 7. Ա. կողմը, *Տիգրանի գլուխը աջ դարձած թիւ* 1*ի պէս։*

Բ. կողմը, ΒΑΣΙΛΕΩΣ *աջ կողմը դէպի վար։*

ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ *ձախ կողմը դէպի վար։*

*Անտիոքի Բախտը եւ Որոնդէսի չաստուածը թիւ* 1*ի նման. դաշտին մէջ մենագիր։*

## Է.

## ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԴՐԱՄՆԵՐՈՒ ԿԱՐԵՒՈՐ ՀԱՒԱՔԱԾՈՆԵՐ

*Անցեալին՝ դրամներու հաւաքածոները կը գտնուէին թանգարաններուն մէջ, եւ ընդհանրապէս կազմուած էին երկար տարիներու ընթացքին։ Անհատական հաւաքածոներու կազմութիւնը կը քաջալերուէր միայն այն ատեն, երբ թէ՛ գիտութիւնը եւ թէ՛ նիւթը մատչելի կ՚ըլլայ դրամագէտներուն։*

*Վերջին տասը տարիներու ընթացքին այս երկու պայմանները ալ հետաքրքրութեան առարկայ եղած են, այսպէսով կարելիութիւն ստեղծուած է անհատներուն քով՝ մշակելու դրամագիտութեան ճիւղը։*

*Շատոնց աշխարհի կարեւոր թանգարանները, ինչպէս՝ Բրիտանական թանգարանը, Փարիզի Ազգային Մատենադարանը, Էրմիտաժը, Բերլինի թանգարանը, Ամերիկեան դրամագիտական Ընկերութիւնը, եւ զոյգ Մխիթարեաններու թանգարանները՝ հաւաքած են Արտաշէսեան դրամներ։ Անոնց վրայ պէտք է աւելցնել աւելի վերջերս կազմուած Երեւանի Պատմական Թանգարանի Հաւաքածոն։ Ներկայիս անհատական հաւաքածոներ ունին՝ Տիկ. Ն. Գա-*

*փամանի եւ Պր. Ա. Աչնեան՝ Պարիսի մէջ, Պրոֆ. Ա. Տօնապետեան եւ ուրիշներ՝ Պէյրութի մէջ, իսկ Պր. Ճ. Կէվրէկեան, Պր. Զ. Թարգեան եւ ես՝ Նիւ Եորքի մէջ: Առանցմէ զատ կան ուրիշ բազմաթիւ պետական եւ անհատական հաւաքածոներ, որոնք կը պարունակեն փոքրաթիւ Արտաշէսեան դրամներ:*

*Այս գլուխին մէջ կու տանք համառօտ նկարագրութիւն մը կարեւոր հաւաքածոներու տանց մանրամասնութեանց լինալու, մեր նպատակն ըլլալով ընթերցողին ներկայացնել հաւաքածոներու պարունակութիւնը եւ ոչ թէ զանազան դրամներու տարբերութիւնները: Սակայն երբեմն պիտի չեչտենք մասնաւոր հազուագիւտ դրամներու կարեւորութիւնը:*

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ, ԼՈՆԴՈՆ

### ՏԻԳՐԱՆ Ա.

1 *Պղինձ* (*Տխ.* 1, *Թիւ* 4):

### ՏԻԳՐԱՆ Բ.

9 *Ջորեքդրամներ* (*Տխ.* 2, *Թիւ* 8), *զանազան մենագրերով:*

1 *Ջորեքդրամ, Բ. կողմը դաշտին մէջ գրուած* ΔΗΜ *գրերով:*

*Այս գեղեցիկ դրամին նմանահանութիւնը* (electrotype) *չինուած եւ օրինակները ծախուած են: Թերեւս այս պատճառով ալ լոյս տեսած զանազան հրա–*

տարակուսիններու մէջ: Այսպէս Ատրպետ[1] եւ Բասմաճեան[2] կու տան այս դրամին պատկերը, առաջինը զայն կոչելով տասնդրամ (decadrachm) եւ երկրորդը՝ այս դրամին պատկերը դնելով իր գրքին կողքին վրայ: Ոչ առաջինը եւ ոչ ալ երկրորդը կը նկարագրեն դրամին Բ. կողմը:

1 Չորեքդրամ կոխուած Դամասկոսի մէջ (Տխ. 2, Թիւ 9):

3 Դրամներ (drachm) զանազան մենագրերով (Տխ. 2, Թիւ 10):

3 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 11):

2 Կէս-պղինձներ (Տխ. 2, Թիւ 12):

2 Պղինձ, Դամասկոսի մէջ կոխուած (Տխ. 2, Թիւ 13):

1 Կէս-պղինձ (Տխ. 3, Թիւ 17):

1 Կէս-պղինձ A գիրով (Տխ. 3, Թիւ 18):

1 Պղինձ, Բ. կողմը ունենալով Վահագնը (Տխ. 3, Թիւ 19):

Այս պղինձը շատոնց է կը պահուի այս թանգարանին մէջ եւ առաջին անգամ ըլլալով յիշատակուած է Կոմբէի[3] կողմէ 1814ին:

1 Մէկ-երրորդ (°) պղինձ (Տխ. 3, Թիւ 21):

---

1 Ատրպետ, Ազգագրական Հանդէս, Թիֆլիս 1912, էջ 204:

2 Կ. Յ. Բասմաճեան, Հայկական Ընդհանուր դրամագիտութիւն, Վենետիկ 1936:

3 T. Combe, Veterum Popularum et Regum Numi qui in Musei Britannico, London (1814), p. 215, No. 4, Pl. XII, No. 15.

## ԱՐՏԱՒԱԶԴ Բ.

1 Դրամ (drachm) (Տխ. 4, Թիւ 23):

## ԱՐՏԱՒԱԶԴ Գ. ԵՒ ԱՒԳՈՍՏՈՍ ԿԱՅՍՐ

1 Դրամ (drachm) (Տխ. 5, Թիւ 39):

*Այս հազուադիւտ դրամէն երկրորդ օրինակ մը կը գտնուի իմ հաւաքածոյիս մէջ: Այս դրամին վրայ ընդարձակ յօդուած մը հրատարակած է Գարդնէր 1872ին*[4]:

## ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ, ՊԱՐԻՍ

### ՏԻԳՐԱՆ Ա.

2 Պղինձ (Տխ. 1, Թիւ 2):
1 Պղինձ (Տխ. 1, Թիւ 3):
1 Պղինձ (Տխ. 1, Թիւ 4):
6 Պղինձ (Տխ. 1, Թիւ 5):
1 Պղինձ (Տխ. 1, Թիւ 6):

*Այս պղինձներու մեծամասնութիւնը մաս կը կազմեն վերջերս գտնուած Մծբինի դրամագիւտին, որ ուսումնասիրուեցաւ Սայրիկի*[5] *կողմէ*:

### ՏԻԳՐԱՆ Բ.

1 Չորեքդրամ ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ գրութեամբ (Տխ. 1, Թիւ 7):

---

[4] P. Gardner, On an Unpublished Coin of Artavasdes II. King of Armenia, London (1872), pp. 9—15, Pl. 1.

[5] H. Seyrig, Trésor Monetaire de Nisibe. Revue Numismatique, 1955, p. 85—128. Paris, 1955.

Այս դրամէն օրինակ մը կը գտնուի Էրմիտաժի մէջ: Երկրորդ օրինակ մըն ալ ծախուած է 1904ին Պրովէի[6] աճուրդին մէջ, բայց այժմ չի գիտցուիր թէ ուր կը գտնուի:

5 Զարեքդրամներ, զանազան մենագրերով (Տխ. 2, Թիւ 8):

2 Զարեքդրամներ, Դամասկոսի (Տխ. 2, Թիւ 9):

2 Դրամներ (Տխ. 2, Թիւ 10):
2 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 11):
1 Կէս-պղինձ (Տխ. 2, Թիւ 12):
3 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 13):
1 Կէս-պղինձ (Տխ. 3, Թիւ 14):
1 Մէկ-երրորդ (?) պղինձ (Տխ. 3, Թիւ 15):
1 Պղինձ (Տխ. 3, Թիւ 16):
1 Պղինձ Վահագն (Տխ. 3, Թիւ 19):
1 Պղինձ (Տխ. 3, Թիւ 20):

## ԱՐՏԱԽԱԶԴ Բ.

1 Պղինձ (Տխ. 4, Թիւ 24): Այս հազուագիւտ պղինձէն երկրորդ օրինակ մը մաս կը կազմէր ողբացեալ Գեղամ Գալոյճեանի հաւաքածոյին եւ նուիրուեցաւ Հայաստանի պետական Պատմական Թանգարանին[7]: Վերջինս կոխուած է Փիւնիկեան դրամի մը վրայ:

---

6 Prowe Collection, B. Egger Auction Sale, Vienna (1904), p. 86.

7 Զ. Պտուկեան, Գեղամ Գալոյճեանի արժէքաւոր նուէրը Հայաստանի Պետական Թանգարանին, Հայաստանի Կոչնակ, 1960, Թիւ 21, էջ 495—96:

## ՏԻԳՐԱՆ Գ.

1 *Պղինձ, Բ. կողմը փիղ մը (Տխ. 4, Թիւ 27) :*

1 *Կէս–պղինձ, Բ. կողմը ձի մը (Տխ. 4, Թիւ 30) : Այս դրամին մեծ տեսակը կը գտնուի Տօնապետեանի հաւաքածոյին մէջ. տես վարը :*

## ՏԻԳՐԱՆ Դ.

1 *Պղինձ (Տխ. 4, Թիւ 31) : Այս պղինձէն երկրորդ մաշած օրինակ մը կը գտնուի իմ հաւաքածոյիս մէջ :*

1 *Պղինձ (Տխ. 5, Թիւ 33) : Այս պղինձին պզտիկ տեսակը կը գտնուի Վիեննայի Մխիթարեաններու Թանգարանը :*

1 *Պղինձ (Տխ. 5, Թիւ 35) :*

## ՏԻԳՐԱՆ Դ. ԵՒ ԵՐԱՏՈՅ

1 *Խոշոր պղինձ (Տխ. 5, Թիւ 38) :*

*Այս շատ հետաքրքրական պղինձը շատոնց ծանօթ է եւ պատմականօրէն կարեւոր : Երկրորդ նոյն տեսակ պղինձ մը՝ (Տխ. 6, Թիւ 37–1), բայց տարբեր դրութեամբ կը պահուի Սկովտիոյ* Glasgow University Hunterian *թանգարանի մէջ : Շատ աւելի կարեւոր է նոյն տեսակ երրորդ դրամ մը, որուն մէկ կողմը կը տեսնուի Տիգրանի եւ միւս կողմը Աւգոստոս կայսեր դրամը (Տխ. 6, Թիւ 37–2) : Այս վերջինս կը պահուի* Oxford University*ի* Ashmolean *թանգարանի մէջ :*

ՏԻԳՐԱՆ Ե.

1 *Պղինձ* (*Տխ.* 5, *Թիւ* 40) : *Այս դրամը չկարենալով ուրիշ Տիգրանի տալ, վերագրեցինք Տիգրան Ե.ի* : *Մաքուր օրինակ մը կը գտնուի Բերլինի Թանգարանին մէջ* :

## ԷՐՄԻՏԱԺԻ ԵՒ ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ԱՍԻԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ*

ՏԻԳՐԱՆ Բ.

1 *Չորեքդրամ* ΒΑΣΙΛΕΩΣ | ΒΑΣΙΛΕΩΝ | ΤΙΓΡΑΝΟΥ *գրութեամբ* (*Տխ.* 1, *Թիւ* 7) : *Տես նոյն դրամը Պարիսի Ազգային Մատենադարանի մէջ* :

8 *Չորեքդրամներ զանազան մենագրերով* (*Տխ.* 2, *Թիւ* 8) :

6 *Դրամներ* (*Տխ.* 2, *Թիւ* 10) :

1 *Պղինձ* (*Տխ.* 2, *Թիւ* 11) :

1 *Պղինձ* (*Տխ.* 2, *Թիւ* 16) :

1 *Կէս–պղինձ* A *գրով* (*Տխ.* 3, *Թիւ* 18) :

ԱՐՏԱՒԱԶԴ Բ.

1 *Արծաթ դրամ* (*Տխ.* 4, *Թիւ* 23) :

## ԲԵՐԼԻՆԻ ԹԱՆԳԱՐԱՆ*

ՏԻԳՐԱՆ Բ.

12 *Չորեքդրամներ* (*Տխ.* 2, *Թիւ* 8) :

5 *Դրամներ* (*Տխ.* 2, *Թիւ* 10) :

---

* *Էրմիթաժի եւ Լենինկրատի Ասիական դրամներու ցանկը ինծի դրկուեցաւ Պրոֆ. Ա. Պըկովի կողմէ՝ իսկ Պերլինի Թանգարանի դրամներու ցանկը* Dr. H. D. Schultz*ի կողմէ* : *Այս առթիւ մասնաւոր*

2 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 11)։
5 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 13)։
1 Պղինձ (Տխ. 3, Թիւ 17)։
1 Պղինձ (Տխ. 3, Թիւ 18)։

ԱՐՏԱԻԱԶԴ Բ.

3 Արծաթ դրամ (drachm) (Տխ. 4, Թիւ 23)։

ՏԻԳՐԱՆ Ե.

1 Պղինձ (Տխ. 5, Թիւ 40)[8]։

ՏԻԳՐԱՆ (անծանօթ)

1 Պղինձ փոքր[8]։

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ԴՐԱՄԱԳԻՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ՏԻԳՐԱՆ Բ.

8 Չորեքդրամներ (Տխ. 2, Թիւ 8)։
5 Դրամներ (Տխ. 2, Թիւ 10)։
2 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 11)։
2 Պղինձներ (Տխ. 2, Թիւ 13)։
2 Պղինձներ (Տխ. 3, Թիւ 16)։
1 Պղինձ (Տխ. 2, Թիւ 19)։

ՏԻԳՐԱՆ Գ.

1 Արծաթ (Տխ. 4, Թիւ 26)։

Աւնիկա՝ այս թագաւորէն միակ ծանօթ արծաթն է։

---

շնորհակալութիւններս կը յայտնեմ այս երկու բարեկամ դրամագէտներուն։

[8] Ph. Lederer, Berliner Münzblätter, NF Bd. X. 1930—1932, p. 388—397.. Tf. 124.

## ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՆԱՆԳԱՐԱՆ

### ՏԻԳՐԱՆ Բ.

15 *Զուրեբզղրամնեբ* (*Տխ*. 2, *Թիւ* 8) ։
3 *Դրամներ* (*Տխ*. 2, *Թիւ* 10) ։
2 *Պղինձներ* (*Տխ*. 2, *Թիւ* 11) ։
2 *Պղինձներ* (*Տխ*. 3, *Թիւ* 18 ։

### ԱՐՏԱՒԱԶԴ Բ.

1 *Արծաթ դրամ* (*Տխ*. 4, *Թիւ* 23) ։

### ՏԻԳՐԱՆ Գ.

1 *Պղինձ* (*Տխ*. 4, *Թիւ* 27 ։

### ՏԻԳՐԱՆ Դ.

1 *Պղինձ* (*Տխ*. 5, *Թիւ* 32) ։

## ՎԵՆԵՏԻԿԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ

### ՏԻԳՐԱՆ Բ.

25 *Զուրեբզղրամնեբ* (*Տխ*. 2, *Թիւ* 8) ։
1 *Դրամ* (*Տխ*. 2, *Թիւ* 10) ։
1 *Պղինձ* (*Տխ*. 2, *Թիւ* 11) ։
1 *Պղինձ* (*Տխ*. 2, *Թիւ* 12) ։
1 *Պղինձ* (*Տխ*. 2, *Թիւ* 16) ։
1 *Պղինձ* (*Տխ*. 3, *Թիւ* 19) ։
1 *Ոսկի* (*կեղծ*) (*Տխ*. 7, *Թիւ* 3) ։

## ԵՐԵՒԱՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ

*Երեւանի Թանգարանին դրամները դեռ հրատարակուած չեն։ Գիտենք սակայն, որ հոն կան Արտաշէսեան դրամներ։*

### ՏԻԳՐԱՆ Բ․

Քանի մը հատ Չորեքդրամներ (Տխ․ 2, Թիւ 8)։

Քանի մը հատ Դրամներ (Տխ․ 2, Թիւ 10)։

*2 Պղինձներ (Տխ․ 2, Թիւ 11)։

*1 Պղինձ (Տխ․ 2, Թիւ 13)։

### ԱՐՏԱՒԱԶԴ Բ․

1 Չորեքդրամ (Տխ․ 3, Թիւ 22)։ Արտաւազդի այս միակ չորեքդրամը հրատարակուեցաւ Մուշեղեանի կողմէ [9]։

Քանի մը հատ դրամ (Տխ․ 4, Թիւ 23)։
*1 Պղինձ (Տխ․ 4, Թիւ 24)։

*Աստղանիշով դրամները մաս կը կազմեն ողբացեալ Գ․ Գալայճեանի հաւաքածոյին, որ նուիրուեցաւ Երեւանի Թանգարանին [7]։*

---

[9] Խ․ Մուշեղեան, Արտաւազդ Բ․ի Չորեքդրամանը․ Պատմաբանասիրական Հանդէս, Երեւան, 1964, Թիւ 2, էջ 317—323։

## ԶԱՐԵՀ ՊՏՈՒԿԵԱՆԻ ՀԱՒԱՔԱԾՈՆ, ՆԻՒ ԵՈՐՔ

### ՏԻԳՐԱՆ Ա.

1 *Պղինձ* (*Տխ*. 1, *թիւ* 5)։

### ՏԻԳՐԱՆ Բ.

8 *Չորեքդրամներ* (*Տխ*. 2, *թիւ* 8)։
2 *Դրամներ* (*Տխ*. 2, *թիւ* 10)։
7 *Պղինձներ* (*Տխ*. 2, *թիւ* 11)։
2 *Պղինձներ* (*Տխ*. 2, *թիւ* 13)։
12 *Պղինձներ* (*Տխ*. 3, *թիւ* 16)։
2 *Պղինձներ* (*Տխ*. 3, *թիւ* 17)։
1 *Պղինձ* (*Տխ*. 3, *թիւ* 18)։
1 *Պղինձ* (*Տխ*. 3, *թիւ* 18–1)։
1 *Պղինձ* (*Տխ*. 3, *թիւ* 18–2)։
2 *Պղինձներ* (*Տխ*. 3, *թիւ* 19)։
1 *Պղինձ* (*Տխ*. 3, *թիւ* 19–1)։

### ԱՐՏԱՒԱԶԴ Բ.

1 *Արծաթ* (*Տխ*. 4, *թիւ* 23)։

### ԱՐՏԱՇԷՍ Բ.՞

1 *Պղինձ* (*Տխ*. 4, *թիւ* 25)։

### ՏԻԳՐԱՆ Գ.

1 *Պղինձ* (*Տխ*. 4, *թիւ* 27)։

### ՏԻԳՐԱՆ Դ.

1 *Պղինձ* (*Տխ*. 5, *թիւ* 34)։
1 *Պղինձ* (*Տխ*. 5, *թիւ* 35)։
1 *Պղինձ* (*Տխ*. 5, *թիւ* 36)։

## ԱՐՏԱՒԱԶԴ Գ. ԵՒ ԱՒԳՈՍՏՈՍ

1 *Արծաթ* (*Տխ.* 5, *Թիւ* 39)։

*Այս դրամէն ուրիշ օրինակ մը կը գտնուի Բրիտանական Թանգարանի մէջ։*



*Այս հաւաքածոներէն զատ կան նաեւ բազմաթիւ անհատական հաւաքածոներ։ Նիւ Եորքաբնակ Կէմբրէկեանի եւ Թարգեանի հաւաքածոները հարուստ են Մեծն Տիգրանի գեղեցիկ արծաթ եւ պղինձ դրամներով։ Պէյրութաբնակ Տօնապետեանի հաւաքածոն ունի ոչ միայն Մեծն Տիգրանի դրամները, այլ նաեւ Տիգրան Գ.ի կէս–պղինձը* (*Տխ.* 4, *Թիւ* 29) *եւ ուրիշ պղինձ մը* (*Տխ.* 6, *Թիւ* 29–1), *որ ներկայիս միակ նմոյշներ են այս կտոր–ներէն։*

*Սկովտիայի* Glasgow University*ի* Hunterian *Թանգարանի դրամներու հարուստ հաւաքածոն ունի Տիգրան Մեծի չորեք–դրամներ եւ դրամներ, ինչպէս նաեւ պղինձ–ներ* (*Տխ.* 3, *Թիւ* 17 *եւ Տխ.* 2, *Թիւ* 13)։ *Բայց հոն գտնուող ամէնէն հետաքրքրական դրամը Տիգրան Դ.ի եւ Երատոյի պղինձն է* (*Տխ.* 6, *Թիւ* 38–1), *եզակի իր տեսա–կին մէջ։*

*Նոյնպէս Անգլիոյ* Oxford University*ի* Ashmolean *Թանգարանը ունի Տիգրանեան*

դրամներ, որոնց կարգին շատ հետաքրքրական պղինձ դրամ մը՝ Տիգրան Դ.ի եւ Աւգոստոս կայսեր (Տխ. 6, Թիւ 38–2)։

Տարակոյս չկայ որ կան ուրիշ բազմաթիւ դրամներ զանազան թանգարաններու եւ անհատական հաւաքածոներու մէջ։ Բայց քանակէն շատ աւելի կարեւոր է՝ գտնել նոր տեսակի դրամներ, եւ մանաւանդ գտնել՝ ներկայիս անծանօթ Զարեհի, Արտաշէս Ա.ի, Արտաւազդ Ա.ի եւ Արտաշէս Բ.ի դրամները։

## Չ.

## ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆԻ ՊՂԻՆՁԷ ԴՐԱՄ ՄԸ ԿՈԽՈՒԱԾ ԿՈՄԱԳԵՆԷԻ ՄԷՋ*

Մեծն Տիգրան Հայաստանի ամէնէն նշանաւոր թագաւորն էր, որ հաստատեց կայսրութիւն մը, որուն սահմանները կը հասնէին Կասպից ծովէն մինչեւ Միջերկրական: Այս պատճառաւ անոր դրամները աւելի ուսումնասիրութեան առարկայ եղած են, քան ուրիշ որեւէ Արտաշէսեան թագաւորի մը դրամները[1]:

Մեծն Տիգրան դրամներ կոխած է Անտիոքի[2], Դամասկոսի[3], եւ անշուշտ նաեւ Հայաստանի մէջ: Այս դրութիւնը նուիրուած

---

* Թարգմանութիւն հեղինակին Numismatic Chronicle/ի (1970) մէջ հրատարակած յօդուածին:

1 V. Langlois, Numismatique de l'Arménie de l'Antiquite (Paris, 1859), E. Babelon, Les Rois de Syrie, d'Arménie et de Commagene (Paris, 1890). G. Macdonald, "The Coinage of Tigranes", Numismatic Chronicle, 4th ser., Vol. II (1902), pp. 193—202. E. T. Newell, Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus, Numismatic Notes and Monographs 84 (1939), pp. 95—100.

2 Տե՛ս Babelon եւ Macdonald:

3 Տե՛ս Newell, էջ 95—100:

է պղինձէ դրամի մը, որմէ առնուազն վեց օրինակներ ծանօթ են[4]. ինչպէս նաեւ կէս պղինձ մը իմ հաւաքածոյիս մէջ, եւ որ մինչեւ այսօր տրուած էր ոչ թէ Տիգրանին՝ այլ Կոմագէնէի Անտիոքոս Ա. Թէոսին[5]: Ես կը համարիմ թէ բոլոր դրամագիտական եւ այլ ապացոյցները կը ստիպեն այն եզրակացութեան յանգիլ, թէ այս դրամը կոխուած է Տիգրանի կողմէ, երբ Կոմագէնէ մաս կը կազմէր հայկական կայսրութեան 82—69 Ք. ա.:

Երբ քննենք այս դրամին Ա. կողմը կը տեսնենք որ թէ արուեստով եւ թէ շինուածքով ան ճիշդ կը նմանի Տիգրանի արծաթ եւ պղինձ դրամներուն, այնքան որ՝ երբ դրամին միւս կողմը կը նայինք իսկապէս կը զարմանանք, երբ հոն չենք գտներ Տիգրանի դրամներուն պատկերն եւ գրութիւնը: Դրամին Ա. կողմին վրայ կը տեսնենք Տիգրանի ծանօթ կիսանդրին, գլուխը աջ դարձած, կրելով հայկական հինգ ծոպաւոր խոյրը՝ արքայական ապարօշով: Հայկական խոյրը,

---

[4] Այս դրամներէն օրինակներ կը գտնուին հետեւեալ թանգարաններուն մէջ Bibliothèque National, Paris; British Museum, London; American Numismatic Society, New York; Վիեննայի Մխիթարեան Վանքը եւ Հեղինակին հաւաքածոյին մէջ:

[5] E. Babelon, pp. CCXII—CCXIV, 218, pl. XXX, No. 5.

British Museum Catalog of Greek Coins; Galatia, Cappadocia and Syria, pp. xliv—xlv, 105, Pl. XIV, No. 8.

ինչպէս միշտ, զարդարուած է ութատա-մեան աստղով, երկու կողմը կանգնած ար-ծիւներ, որոնք դէպի դուրս դարձած են, բայց անոնց գլուխը կը նայի աստղին :

Անոնց բացառութեան, բոլոր Արտաշէ-սեան դրամները[6], որոնցմէ քառասուն տե-սակ ծանօթ են, ունին Ա. կողմը յատկան-շական հայկական խոյրը, զարդարուած ութ-ատամեան աստղով եւ ընդհանրապէս ընկե-րացող երկու արծիւներով : Աւելցնենք նաեւ որ անոնց բացառութեան — բաց ի մեր նիւթը եղող այս դրամը — որեւէ հայկական խոյրով դրամ մը չկայ, որ Արտաշէսեան թագաւորի մը վերագրուած ըլլայ :

Թէ ինչո՞ւ այս դրամը տրուած է Ան-տիոքոս Ա.-ին : Պատճառը յայտնի կ'ըլլայ, երբ քննենք դրամին Բ. կողմը : Հոն կը տեսնենք ΒΑΣΙΛΕΩΣ ΑΝΤΙΟΧΟΥ գրութիւնը եւ առիւծ մը որ աջ կը քալէ : Այս տեսակ առիւծի կը տեսնուի[7] ժամանակակից Գա-ղատիոյ եւ Սամոսատի դրամներուն վրայ : Տարակոյս չկայ որ դրամին Բ. կողմը

6 P. Bedoukian, "A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia". American Numismatic Society, Museum Dotes XIV. New York, (1968), pp. 41—66. Pl. IX, X, XI. Այս յօդուածին հայերէն թարգմանութիւնը տես Հան-դէս Ամսօրեայ ՁԲ. տարի (1968) թիւ 7—9, էջ 319—354 :

7 BM Catalog of Greek Coins, Galatia, Cappadocia and Syria. Pl. XXX, No. 18, 19.

կը պատկանի Կոմագէնէի Անտիոքոս Ա. Թէոսին:

Ընդհանրապէս ընդունուած է որ Անտիոքոս յաջորդեց իր հօրը Ք. ա. 69 թուականին, Տիգրանի Պոմպէոսէն պարտուելէն յետոյ: Եթէ այս ճիշդ է, այն ատեն այս դրամը կոխուած է այս թուականէն վերջ: Սակայն պէտք է նկատի առնել, որ Անտիոքոսի թագաւորութեան այս թուականը առնուած է հռոմէական աղբիւրներէ, երբ Հռոմ վերջնականապէս տէր դարձած էր Կոմագէնէի: Անտիոքոսի անունը որեւէ տեղ չէ յիշատակուած այս թուականէն առաջ: Սակայն այս կէտը ապացոյց չէ, որ Անտիոքոս չէ թագաւորած այս թուականէն առաջ:

Շատ դժուար է բացատրել թէ ինչո՞ւ Անտիոքոս դրած է Տիգրանի պատկերը իր դրամին վրայ 69 թուականէն յետոյ՝ երբ Տիգրան արդէն Հռոմէն պարտուած թշնամի մըն էր: Անտիոքոս Հռոմի գերիշխանութեան տակ էր եւ կարելի չէ որ համարձակէր Հռոմէացիները տհաճեցնել, դնելով Տիգրանի պատկերը իր դրամներուն վրայ: Աւելին. Հռոմէացիք Անտիոքոսին տուին հողամասեր, որոնք նախկին Հայաստանի մաս չէին կազմեր, այսպէսով որեւէ պատճառ չկար դրամներուն վրայ դնելու Տիգրանի նկարը եւ հայկական խոյրը:

Կ'արժէ հոս յիշատակել որ խոյրեր կը գտնուին Մեդիոյ եւ Կոմագէնէի դրամներուն վրայ: Սակայն Կոմագէնէի դրամներու խոյ-

րերը զարդարուած են կարիճով մը[8], իսկ Մեղիոյի խոյրերը գունդով մը[9]: Այսպէս անոնք բոլորովին կը տարբերին Հայկական խոյրերէն[10]:

Նէմրուտ լեռան պեղումները[11] մէջտեղ հանած են կարգ մը հետաքրքրական բարձ-րաքանդակներ, որոնք կը պարզեն Անտիո-քոսի եւ իր հօր կրած խոյրերու տարազը: Ժայռի վրայ փորագրուած քանդակները[12] կը ցուցնեն յստակօրէն՝ Կոմագէնէի խոյրեր, որոնք զարդարուած են աջ քալող առիւծով, ճիշդ մեր դրամին Բ. կողմի նկարին նման: Այս քանդակները կ'ապացուցանեն որ այդ ժամանակի թագաւորները կը կրէին խոյրեր· բայց իւրաքանչիւր թագաւորութիւն ունէր իր ինքնայատուկ խոյրը, որ կը զանազանուէր միւսներէն: Եթէ մեզի անծանօթ պատճառներով Անտիոքոս որոշած էր իւրացնել Հայ-կական խոյրը, այն ատեն նոյն Հայկական խոյրը պէտք է տեսնուէր Անտիոքոսի բարձ-րաքանդակներուն վրայ: Բայց Նէմրուտ լեռան վրայ գտնուած արձաններուն կամ բարձրա–

---

8 E. Babelon, Pl. XXX, No. 18, 19.

9 E. Robinson, Numismatic Chronicle (1937), pp. 250—255. Pl. XXXII, No. 29, 30.

10 Տես թիւ 6:

11 C. Humann und O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien (Berlin, 1890).

J. H. Young, American Journal of Archeology, 68, 1964, pp. 29—34, Pl. 11 and 12. Այս հե-ղինակը տարբեր խոյրերը իրարմէ չի զանազաներ:

12 T. Goell, Նեմրուտ լեռան քանդակներու անձ-նական նկարներ:

քանդակներուն վրայ բնաւ չի տեսնուիր աստղով հայկական խոյր, եւ միշտ կը գըտնուի Կոմագէնէի խոյրը առիծով :

Յայտնի է որ պէտք է փնտռել բանաւոր պատճառ մը բացատրելու համար, թէ ինչո՞ւ այս դրամը կոխուած է, ունենալով Տիգրանի կիսանդրին Ա. կողմը եւ Անտիոքոսի անունը Բ. կողմը :

Ես այն եզրակացութեան եկած եմ թէ այս դրամները կոխուած են Ք. ա. 69էն առաջ, երբ Կոմագէնէն մաս կը կազմէր Տիգրանի կայսրութեան, եւ Անտիոքոսի անունը յիշատակուած է, որովհետեւ ան եղած է դաշնակից–հպատակ Տիգրանին :

Գտնուելով ռազմագիտական կարեւոր դիրք մը Հայաստանի եւ Անտիոքի միջեւ, Կոմագէնէն պէտք է Տիգրանի իշխանութեան ենթակայ ըլլար Ք. ա. 83էն աւելի առաջ, երբ ան գրաւեց Անտիոքը : Ռէյնաք[13] կը գրէ թէ Տիգրան Անտիոքը գրաւելէն առաջ միջցներ ձեռք առաւ, որ բոլոր տեւտոնքի ճամբաները, որ Կոմագէնէի եւ շրջականերու հետ կապ ունէին, իր ազդեցութեան տակ ըլլան : Այնպէս կ'երեւի թէ այս կարգադրութիւններն եղած են խաղաղ միջոցներով :

Այս դրամներուն կոխուելուն թուականը պէտք է ըլլայ Ք. ա. 83ի եւ 69ի միջեւ : Որոշապէս չի գիտցուիր թէ ե՞րբ Անտիոքոս յաջորդեց իր հօր Միհրդատին : Հաւանական

13 Th. Reinach, Mithridate Eupator (Paris, 1890), p. 312.

*է որ այդ տեղի ունեցած է, երբ Կոմագէնէ մաս կազմեց Հայաստանին: Ինչ որ ալ ըլլայ, դրամները պէտք է կոխուած ըլլան 69էն քանի մը տարի առաջ, որովհետեւ կը տեսնուի տարբերութիւններ օրինակներու միջեւ. եւ ատկէ կը հետեւի որ անոնք տարբեր ժամանակներ կոխուած են:*

*Կը մնայ պատասխանել ուրիշ հարցի մը եւս: Հայաստանէն դուրս կոխուած Տիգրանի բոլոր դրամներուն Ա. կողմին վրայ կը տեսնենք Տիգրանի կիսանդրին հայկական խոյրով, եւ Բ. կողմին վրայ* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ *գրութիւնը եւ տեղական դիցուհիին պատկերը: Օրինակ. Անտիոքի մէջ կոխուած դրամներուն վրայ կը տեսնուի Անտիոքի Բախտը եւ Որոնդէս գետի չաստուածուհին: Իսկ Դամասկոսի մէջ կոխուած դրամներու վրայ կը տեսնենք Դամասկոսի Բախտը: Սպասելի էր որ Կոմագէնէի մէջ կոխուած դրամներն ալ Բ. կողմին վրայ կրէին Տիգրանի եւ ոչ թէ Անտիոքոսի անունը առիւծով միասին: Պատասխանը այն է որ Անտիոքոս խաղաղութեամբ ընդունեց Տիգրանի գերիշխանութիւնը եւ այսպէս դաշնակից-հպատակ ըլլալով՝ իրեն թոյլատրուեցաւ, իր անունով ալ դրամ հատանելու:*

*Զարմանալի է որ ուրիշ դրամներ չեն տրուած Անտիոքոսին, որ քանի մը տասնեակ տարիներ տիրապետեց Տիգրանին պարտութենէն յետոյ: Իր յաջորդներուն տրուած բոլոր դրամները Կոմագէնէի դրամներու*

տիպն ունին [14]։ Թերեւս ատոնցմէ ոմանք կոխուած են Անտիոքոսի կողմէ։ Սպասելի է որ թագաւոր մը, որ ինքզինք աստուածացուց՝ կառուցանելով սուրբ մեհեան մը Նեմրութ լեռան գագաթին վրայ, պիտի կոխէր նաեւ դրամներ իր պատկերով, անունը յաւերժացնելով պատմութեան մէջ։ Ուրեմն անհաւանական չէ ենթադրել որ Ք. ա. 69էն վերջ ան կոխեց դրամներ Կոմագէնեան տիպով, թէեւ այս տեսակ դրամներ անծանօթ են մինչեւ օրս։

---

[14] E. Babelon, Pl. XXX եւ BM Catalog. Pl. XV.

## ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ԴՐԱՄՆԵՐՈՒ ՅՈՒՆԱՐԷՆ ԽՈՐԱԳՐԵՐԸ ԵՒ ԱՆՈՆՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

ΒΑΣΙΛΕΩΣ ΑΝΤΙΟΧΟΥ 105
ԹԱԳԱՒՈՐ ԱՆՏԻՈՔՈՍԻ

ΒΑCΙΛΕΩC ΒΑCΙΛΕΩΝ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ 35, 52, 53
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԱՐՏԱՒԱԶԴԻ

ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ ΘΕΙΟΥ 35, 52
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԱՐՏԱՒԱԶԴԻ

ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ 33, 34, 44, 45, 46, 49, 50, 51, 65, 71, 77, 87, 89, 93, 96
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՏԻԳՐԱՆԻ

ΒΑCΙΛΕΥC ΒΑCΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΗC 56, 69
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՏԻԳՐԱՆ

ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ 40, 61
ԹԱԳԱՒՈՐ ՄԵԾԻ ԱՐՏԱՒԱԶԴԻ

ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ 31, 41, 42, 58, 62
ԹԱԳԱՒՈՐ ՄԵԾԻ ՏԻԳՐԱՆԻ

ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΘΕΟΥ 37, 55
ԹԱԳԱՒՈՐ ՄԵԾԻ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՏԻԳՐԱՆԻ

ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΛΗΝΟC 31, 39, 43, 57
ԹԱԳԱՒՈՐ ՄԵԾԻ ՏԻԳՐԱՆԻ, ՅՈՒՆԱՍԷՐԻ

Ծանօթ․— Այս բոլոր խորագրերում վերջին բառը պէտք է հասկնալ – դրամը: Այսպէս՝ պէտք է կարդալ՝
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՏԻԳՐԱՆԻ ԴՐԱՄԸ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

[Անձերու. Թագաւորներու. Հաւաքածոներու. Դրամներու Տիպերու եւ այլն:]



8







9







10

12

11









13



ՏԱԽՏԱԿ 2




17-1




18-1




18-2




20-1




21-1



29-1




38-1





32-1




38-2

ՏԱԽՏԱԿ 6




1




2




3




4




5




6




7

ՏԱԽՏԱԿ 7

ՏԻԳՐԱՆԻ ԿԵՂԾ ՈՍԿԻՆԵՐ



ՏԱԽՏԱԿ 8
ՏԻԳՐԱՆ–ԱՆՏԻՈՔՈՍ ՊՂԻՆՁՆԵՐ

